# ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ

---

## ՄԱՅՐԱՎԱՆՔ

## ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ



ՎԵՆԵՏԻԿ Ս. ՂԱԶԱՐ

1966

Երախտագիտութեամբ
Սուրբ Ղազար կղզիէն
[illegible] Յունուարին 1980ին

Եւրոպա անցնող ամէն հայ ուղեւոր, ուխտաւորի պէս կու գայ այցելելու Ս. Ղազար՝ Մխիթարեան Միաբանութեան մայրավանքը, հիմնուած Մեծն Մխիթար Սեբաստացիէն։

Ս. Ղազարի վանքը, Վենետիկի գեղադուարճ լճակին վրայ ակունքի մը պէս զետեղուած, դարձած է արդարեւ ԺԸ. դարուն՝ հայկական գրականութեան վերածնունդի վառարանը, եւ այդ պատճառով բոլոր ազգայինները կ'ուզեն զայն տեսնել, ճանչնալ եւ հաղորդուիլ անոր հոգեկան եւ մտաւորական շունչով։

Այս համառօտ առաջնորդը նպատակ ունի գաղափար մը տալու Միաբանութեան հիմնարկութեան եւ անոր կատարած դերին հայ պատմութեան մէջ՝ սկսեալ իր ծագման օրերէն մինչեւ այսօր։



ՄԽԻԹԱՐ ԱԲԲԱՀԱՅՐ
ՀԻՄՆԱԴԻՐ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ

# ԳԼՈՒԽ Ա.

# ՄԽԻԹԱՐ ԱԲԲԱՀԱՅՐ ԵՒ ԻՐ ՅԱՋՈՐԴՆԵՐԸ

---

## Ա. – ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ԳԻԾԵՐ ԵՐՆՇ. ՄԽԻԹԱՐ ԱԲԲԱՀՕՐ

*Մեծն Մխիթար ծնած է Սեբաստիա, 7 Փետրուար 1676ին, եւ մկրտութեան անունով կոչուած Մանուկ: Եռանդուն եւ բարեպաշտ պատանին կը մտնէ իր ծննդավայրի Ս. Նշան վանքը եւ 1691ին կը ձեռնադրուի Սարկաւագ: Ուսման ծարաւով կ'աշակերտի ժամանակի նշանաւոր վարդապետներուն, կը բնակի առեն մը Էջմիածնի եւ Բասենի վանքերու մէջ, բայց յուսախաբութիւններ կ'ունենայ ամէն տեղ: Կը կրէ ծանր հիւանդութիւններ, կը տառապի աչքի ցաւով, բայց կը տանի իր բոլոր վիշտերուն եւ նեղութիւններուն՝ սրբութեան եւ գիտութեան համար: 1696ի գարնան կը ձեռնադրուի կուսակրօն քահանայ եւ կը խորհի խակոյն իր ազգին օգտակար ըլլալու այլ և այլ միջոցներուն վրայ, որոնց հիմնականն էր տեւական բնոյթ ունեցող կազմակերպութիւն մը ստեղծել՝ որ կարենար շարունակել իր մտադրած գործը. այդ նպատակով կը սկսի աշակերտներ հաւաքել: Գաւառներու եւ Պոլսոյ մէջ՝ Մխիթար վարդապետ կը վայելէ մեծ քարոզիչի մը համբաւը: Քսանեւհինգ տարուան հասակին, 1701 Սեպտեմբեր 8ին, Պոլսոյ մէջ կը հիմնէ իր Միաբանութիւնը, որ հետզհետէ կը բազմանայ նորահաս անդամներով: Իր կեանքը այլեւս մէկ նպատակ ունի, հասցնել զարգացած քարոզիչ վարդապետներ, լուսաւորելու համար հայ ժողովուրդը: Խուսափելու համար իր Միաբանութեան դէմ յարուցուած արգելքներէն եւ դժուարութիւններէն, 1702ին, աշակերտներովը կը փոխադրուի Մեթոն (Մորէայի կամ Պելոպոնէսի մէջ), ուր կը շինէ նորակառոյց վանք մը եւ կը դնէ իր գործը ամուր հիմերու վրայ: 1715ին, սակայն, կը ծագի պատերազմ մը, Մորէայի հողին վրայ, ընդմէջ Վենետկեան Հասարակապետութեան եւ Թուրքիոյ: Կը խորհի թողուլ Մեթոնը եւ ապաստանիլ Վենետկեան Հասարակա-*

պետութեան մայրաքաղաքը՝ Վենետիկ, յուսալով հոն գտնել երազուած ասպնջականութիւնը՝ չարունակելու իր ազգօգուտ գործը: 1715ի Մարտ 1ին կը մեկնի Մեթոնէն եւ Ապրիլին կը հասնի Վենետիկ իր աշակերտներով:

Սրտի մեծ ցաւով Մխիթար կ'իմանայ վախճանը Մեթոնի մենաստանին: Պատերազմին զոհ կ'երթայ իր առաջին ձեռակերտը, ուր միաբանական ու գրական աշխատանք մը ծայր տուած էր այնքան զոհողութիւններով: Ա՛լ յոյս չկար վերադառնալու Մեթոն:

Մխիթար կը փնտռէ Վենետիկի մէջ, քաղաքին շուրջը՝ նոր վայր մը իր Միաբանութեան համար: Տեղական օրէնք մը կ'արգիլէր շատցնելու միաբանական տուներ ու վանքեր քաղաքին մէջ եւ նաեւ շրջակայքը: Ըսուած էր իրեն գտնել տեղ մը լճակին մէջ ցրուած կղզիներէն մէկուն մէջ: Մխիթար կ'աղօթէր Աստուծոյ եւ յոյսով կը շրջէր ապաստան մը գտնելու իր Միաբանութեան: Կղզիներէն ոմանք արդէն գրաւուած էին, ուրիշներ շատ հեռու քաղաքէն: Գտաւ հատ մը՝ որ թէ՛ ազատ էր եւ թէ՛ իր տարածութեամբ եւ քաղաքին մօտաւորութեամբը յարմար իր նպատակին: Այդ կըղզեակը կը կոչուէր Ս. Ղազար: Ժամանակին բորոտներու բնակարան եղած այդ կղզեակը՝ սահմանուած էր Նախախնամութենէն




Ս. Ղազար 1717ին

դառնալու հայ ժողովուրդին հոգեկան եւ մտաւոր կեանքին ապագայ փարոսը Եւրոպայի սրտին վրայ :

Մխիթար ներկայացուց իր խնդրանքը Հասարակապետութեան : Չմերժուեցաւ, եւ 1717ի Օգոստոս 27ին Ծերակոյտը շնորհեց իրեն եւ իր յաջորդներուն համար, որպէս մշտնջենաւոր բնակավայր՝ Ս. Ղազարու խոնարհ կղզեակը, որ հազիւ 7·000 մեդր քառակուսի տարածութիւն ունէր :

Ո՞վ կրնար երեւակայել որ այդ խեղճ ու լքուած կղզին օր մը պիտի դառնար ազգերու վարիչներուն եւ մտաւորականներուն աչքին բիբը : Ո՞վ կրնար երեւակայել որ այդ կղզեակը պիտի ըլլար վենետկեան լճակին գոհար ակունքը, ինչպէս կը կոչէ տեղացին :

Ուրախութեան զանգակներով եւ շարականներով Մխիթար եւ իր աշակերտները, 1717ի Սեպտեմբեր 8ին, Տիրամօր ծննդեան տօնին օրը, մուտք կը գործէին կղզին, յետ երկու տարի բնակելու



Ս. Ղազար կղզին 1750էն վերջ

Վենետիկոյ Ս. Մարտինոսի թաղին տուներէն մէկուն մէջ: Խարխուլ եւ կիսաւեր քանի մը խուցեր եւ խոպան հող՝ ահա ինչ որ կը ժառանգէին մերինները:

Կրանիտեայ կամքը Մխիթարի կեանք տուաւ այդ ամայի կղզեակին: Ձեռնարկեց նոր մենաստանի մը շինութեան: Ծրագրեց յատակագիծը, և ինքը անձամբ հսկեց շինութիւններուն վրայ: Աստուած ինքն էր որ կը շինէր բոյնը Մեծ Հայուն, որ օտարութեան մէջ կը ներշնչուէր հայրենի հողին եւ սրբավայրերուն ոգիով: Աղքատ էր Մխիթար, բայց յոյսով եւ արիութեամբ հարուստ. կը հանէր Նախախնամութեան օգնութիւնը եւ սրահները կը յաջորդէին սրահներու եւ կամարակապները կամարակապներու, եւ մարմին կ'առնէր նորակառոյց մենաստանը: Ծառեր ու թուփեր կու տային շնորհք ու վայելչութիւն, շունչ եւ կեանք՝ այդ ափ մը խոպան հողին:

1749ի Ապրիլ 27ին, երբ Մխիթար կը փակէր իր աչքերը, վանքին շինութիւնը գրեթէ լրացած էր. ան ստեղծած էր աստուածակերտ բոյն մը, վառած սրբութեան եւ գիտութեան ջահերը եւ կը նայէր լուսաւոր ապագային: Ս. Մեսրոպ, Ս. Սահակ, Նարեկացին և Ներսէսները՝ Շնորհալին ու Լամբրոնացին, իրենց ոգիովը հոն կը թեւածէին՝ ներշնչելով, ոգեւորելով աշխատանքը՝ որուն լծուած էին ինքը եւ իր աշակերտները:

Մխիթար Աբբահայր՝ սրտով ու հոգւով կապուած էր իր տառապեալ ազգին, որուն բարոյական, կրօնական ու գիտական բարիք բաշխելու միակ մտահոգութիւնը ունեցած էր: Գրեց Քերականութիւններ՝ աշխարհաբարի եւ գրաբարի, Բառգիրք Հայկազեան լեզուի, երկու բաժինով, բառական եւ յատուկ անուններու: Իր ձեռնարկը շատ մեծ էր, օգտագործեց ինչքան ձեռագիր որ գտաւ, ճոխացնելու համար իր բառարանը: Գրեց Քրիստոնէական վարդապետութիւն եւ մեկնողական գործեր՝ ժողովողի գրքին եւ Մատթէոսի աւետարանին. վերջինս իր աստուածաբանական արժէքով՝ անոր գլուխ գործոցը եղաւ: Գրեց տաղեր սուրբերու վրայ, մանաւանդ Ս. Անտոն անապատականի եւ Ս. Կոյսին նուիրուած, որուն հանդէպ ունէր որդիական ջերմ զգացում եւ բարեպաշտութիւն, եւ որուն պաշտպանութեան տակ դրած էր իր Միաբանութիւնը:

Մեծն Մխիթար հիմը կը դնէր այսպէս նաև Հայ գրականու-

*թեան վերածնունդին, որուն ամբողջացման նուիրուեցան յետոյ իր աշակերտները։ Անոր թողած աւանդը սրբազան էր, իր բացած ուղին լուսաւոր ճամբան էր հայ ժողովուրդին համար· այդ ճամբէն քալեցին Մխիթարեան Միաբանութեան բոլոր ջահակիրները։*

## Բ. – ՄԽԻԹԱՐ ԱԲԲԱՀՕՐ ՅԱՋՈՐԴՆԵՐԸ

*Մխիթար Աբբահօր առաջին արժանաւոր յաջորդը եղաւ Ստեփանոս Մելքոնեան, երիտասարդ՝ բայց խոհական ու իմաստուն վարդապետը, որ Պոլիս կը գտնուէր՝ երբ ընտրական ժողովին Հայրերը իրենց մատը դրին անոր վրայ: Ջանաց հրաժարիլ, բայց անկարելի եղաւ. հուսկ յանձն առաւ ընդունիլ ծանր բեռը:*

*Ստեփանոս Մելքոնեան ծնած է Պոլիս* 1717*ին, քահանայական ձեռնադրութիւնը ընդունած* 1789*ին. ընտրուած է Աբբահայր* 1750*ի Ապրիլ* 6*ին: Իր աբբայութիւնը տեւած է մինչեւ* 1799*, շուրջ յիսուն տարի: Ան շարունակեց Երնչ. Հիմնադրին գործը, ամբողջացուց շինութիւնները, ճոխացուց մատենադարանը ու քալելով Հիմնադրին գծած ուղիէն՝ առաջնորդեց Միաբանութիւնը իր բարձր նպատակին ու զօրացուց զայն նոր տարրերով եւ ուսումնական ու հոգեւոր կեանքով:*

1789*ին Ս. Ղազարի մէջ բացաւ Մխիթարեան տպարանը: Մխիթար իր հրատարակութիւնները կը կատարէր Վենետկոյ* Անթոնիոյ Պորթոլիի *տպարանը, օժտուած հայկական տառերով: Մելքոնեան զայն գնեց եւ փոխադրեց Ս. Ղազարի հողին վրայ, աւելի եւս դիւրութիւն տալու համար սրբազան, եկեղեցա-պատմական եւ ազգային գործերու հրատարակութեանց:*

*Ստեփանոս Մելքոնեանին կը յաջորդէ Մխիթար Աբբահօր աթոռին վրայ՝ Ստեփանոս Քիւվէր:*

*Ծնած էր Ճուրճով քաղաքը (Թրանսիլվանիա)* 1740*ին եւ տասնեօթամեայ մտած Ս. Ղազարի վանքը, ուր հոգեւորական եւ մըտային ձիրքերը ստացան կատարեալ զարգացում:* 1763*ին ստացաւ քահանայական ձեռնադրութիւնը: Շատ երիտասարդ հասակին ան կը վայելէր համբաւը ուշիմ, խոհեմ եւ սրբակեաց կրօնաւորի: Օժտուած էր նաեւ ուսումնական մեծ կարողութեամբ: Ընտրուեցաւ Աբբահայր* 1800 *Սեպտեմբեր* 9*ին:* 1785*էն մինչեւ ընտրութիւնը՝ արդէն ընդհանուր փոխանորդ կամ Աթոռակալ էր իր նախընթացին:* 1804*ին օծուեցաւ արքեպիսկոպոս, տիտղոսաւոր Սիւնեաց նահանգին: Իր օրով Միաբանութիւնը անցուց մեծ փոթորիկ մը. մեծն Նափոլէոն կը սպառնար ուրիշ միաբանական կարգերու*



ԳԵՐՅ. ՍՏԵՓԱՆՈՍ ՄԵԼԳՈՆԵԱՆ
Բ. ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԱԲԲԱՀԱՅՐ

հետ՝ բնաջնջել նաեւ Մխիթարեանները: Ագոնց Աբբահօր խոհեմ եւ իմաստուն քաղաքականութիւնը, սակայն, գիտցաւ հեռացնել վտանգը, մանաւանդ թէ ստացաւ անհպելի ըլլալու առանձնաշնորհութիւնը:

Ստեփանոս Ագոնց Քիւվէր՝ մեծ զարկ տուաւ վանքի ուսումնական կաճառին. իր օրով, հոյլ մը գիտնական վարդապետներու, կատարեց ծրագրուած աշխատանք, եկեղեցական, աստուածաբանական, պատմական, աշխարհագրական եւ լեզուական ուղղութեամբ: Իր օրով է որ Աւետիքեան, Աւգերեան, Զամչեան եւ Ինճիճեան կարկառուն դէմքերը՝ հրատարակեցին բազմաթիւ ուսումնասիրութիւններ, զօրացուցին վերածնունդի գրականութիւնը: Ասոնց մասին յետոյ առանձին պիտի խօսուի:

Իր բարի օրինակը սրբութեան եւ ուսումնասիրութեան՝ ամէնէն մեծ խթանն էր: Հակառակ բազմազբաղ կեանքին՝ կատարած է նաեւ մատենագրական աշխատանքներ. Ճարտարախօսութիւն, Աշխարհագրութիւն, Պատմութիւն վարուց Մխիթարայ Աբբահօր, Տեսութիւն Ս. Գրոց Հին Կտակարանի եւ Տեսութիւն Ս. Գրոց Նոր Կտակարանի, եւն:

1815ին, աւստրիական կառավարութեան հետ յարմարելով՝ Ագոնց Աբբահայրը յաջողեցաւ հրամանագիր մը հանել տալ Վենետիկի քաղաքային վարչութենէն եւ ընդարձակել Ս. Ղազարի հողը դէպի քաղաքը նայող կողմէ, գրեթէ կրկնապատկելով կղզիին տարածութիւնը:

Իր համբաւը տարածուած էր բովանդակ Եւրոպայի մէջ. Իտալիոյ, Գաղղիոյ, Գերմանիոյ, Աւստրիոյ արքունիքները պատուեցին զինքը շքանշաններով: Ազգայիններ եւ օտարներ, իշխանազուններ եւ գիտական նշանաւոր անձնաւորութիւններ հեռուներէն կու գային իրեն յարգանքը մատուցանելու իրեն:

Ծերունազարդ Ագոնց Քիւվէր կը կնքէր իր մահկանացուն, 1824, Յունուար 29ին, լի արդիւնաշատ վաստակով, իր յաջորդին թողլով ընդարձակուած Ս. Ղազար մը եւ դրական ու հոգեւորական մարզին մէջ հաստատուն գետնի վրայ ամրացած Միաբանութիւն մը:



ԳԵՐՊ. ՍՏԵՓԱՆՈՍ ԱՐՔԵՊ. ԱԳՈՆՑ
Գ. ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԱԲԲԱՀԱՅՐ

Ագոնց Քիւվէրի յաջորդն եղաւ Սուքիաս Սոմալեան, ծնած Պոլիս 1776ին։ Քահանայական ձեռնադրութիւնը ընդունած է 1804ին։ Քարոզչական պաշտօնով ղրկուած է Պոլիս 1808ին եւ վերադարձած Վենետիկ 1814ին։ Նոյն պաշտօնով 1817ին ղրկուած է Մատրաս, ուր մեծ անձնուիրութեամբ օգտակար եղած է հայ գաղութին. սակայն իր առողջութիւնը մեծապէս կրած է տեղւոյն վատ օդէն։ Վերադարձած է Վենետիկ 1820ին։ Աբբայ ընտրուած է 1824ի Յունիս ամսոյն ընտրական ընդհ. ժողովին մէջ։

Արքեպիսկոպոսական աստիճանով պատուած 1826ին, ինչպէս իր նախորդը, Սուքիաս Սոմալ շարունակեց վարչութիւնը Մխիթարի Տան, այն գիծով եւ ոգեւորութեամբ որ Ագոնց տուեր էր անոր։ Մխիթարեան կաճառը իր օրով տեսաւ ծնունդը դասական գրականութեան պատկառելի դէմքերուն՝ Հ. Եղիա Թովմաճեանի, Հ. Ա. Բագրատունիի ստեղծած շարժումով։

Իր օրով է դարձեալ որ հնդկահայ ազնուական բարերարները՝ Ռափայէլ Ղարամեան եւ Սամուէլ Մուրատ, իրագործեցին իրենց խոստումները, եւ բացուեցան անոնց անունները անմահացնող վարժարանները՝ Մուրատեանը Փատուայի մէջ 1834ին եւ Ռափայէլեանը Վենետիկի մէջ 1836ին։

Գրական մարզին մէջ եւս Սուքիաս Սոմալ տուաւ արդիւնքներ։ Եւրոպական աշխարհի ծանօթացուց հայ հին մատենագրութիւնը գրքոյկով մը՝ որ այսօր ալ կը փնտռուի. «Quadro di letteratura armena». պատրաստեց Ցուցակ Թարգմանութեանց Նախնեաց, եւ Առձեռն բառարաններ Հայ-Անգղ-Տաճկ., Անգղ-Հայ-Տաճկ. եւ Տաճկ-Հայ-Անգղ. յետոյ ուրիշ բառարանական աշխատանք մը՝ Հայ-Անգղ. եւ Անգղ-Հայ. գրած է Այցելութիւն հիւանդաց եւ Նկարագիր առաքինի և զգօն անձին, գործեր՝ որոնք այսօր սպառած են։

Խորտակուած առողջութիւնը թոյլ չտուաւ իրեն աւելի երկարելու իր պանդխտութեան տարիները երկրիս վրայ ու վախճանեցաւ 1846, Փետրուար 10ին։



ԳԵՐՊ. ՍՈՒՔԻԱՍ ԱՐՔԵՊ. ՍՈՄԱԼԵԱՆ
Դ. ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԱԲԲԱՀԱՅՐ

Սուքիաս Սոմալ Աբբահօր յաջորդեց Գէորգ Հիւրմիւզ, ծնած Պոլիս 1797ին: Քահանայական ձեռնադրութիւնը ընդունած է 1819ին: 1831էն մինչեւ 1846՝ ան վարած է Մխիթարեան առաքելութիւնը Պոլսոյ մէջ: Որպէս ճարտասան քարոզիչ՝ սիրուած է հոն թէ՛ ժողովուրդէն եւ թէ եկեղեցական դասէն, իր հոգեբուխ իմաստներուն եւ հռետորական հզօր շեշտին համար: Ապրելով ժողովուրդին մէջ՝ լայն չփում ունեցած է ազգային կեանքը հրահրող հարցերուն հետ. ճանչցած է ժողովուրդը իր կարօտութիւններուն, իր ցաւերուն մէջ եւ արիական ոգիով առաջնորդած ու լուսաւորած զայն:

Երբ, 1846ի Յուլիս 2ի ընտրական Ընդհ. Ժողովին մէջ, կ'ընտրուէր Աբբահայր, ան արդէն տէր էր մեծ փորձառութեան մը: Նոյն տարուան Օգոստոս 26ին ալ ձեռնադրուեցաւ արքեպիսկոպոս, տիտղոսաւոր Սիւնեաց Նահանգին: Հակառակ իր թոյլ առողջութեան, ան աննկուն կամքի տէր՝ երկար տարիներ կառավարեց Միաբանութիւնը դժուարին պարագաներուն մէջ: Իր եկեղեցական գիտութեանց մէջ ունեցած խոր հմտութեան, վարչական ձիրքերուն համար եղաւ գնահատուած դէմք մը նաեւ եւրոպական աշխարհի կրօնական եւ գիտական զանազան շրջանակներու մէջ: Ունէր մասնաւոր արժանիք մ'ալ գրական մարզու, աշակերտ Հ. Արսէն Բագրատունիի. տէր դասական հայերէնի բոլոր կատարելութիւններուն՝ բերած է իր մասնակցութիւնը թարգմանութիւններու մէջ դասական գործերու՝ որ այդ տարիներուն այնքան խանդավառութեամբ կը կատարուէին: Հայացուցած է Հնախօսութիւնք Ռոլէնի, որուն աջակցած է նաեւ իր եղբայրը Եդուարդ արքեպիսկոպոս Հիւրմիւզ. այդ թարգմանութիւնը երկուքին ալ երիտասարդական շրջանի գործն էր: Յաջորդեցին թարգմանութիւնները՝ Պուրտալուի Առանձնախօսութիւնքին, Ռասինի Գոթողիա եւ Կոռնէյլի Պողիկտոս ողբերգութիւններուն: Հ. Ա. Բագրատունիի մահով կիսաւարտ կը մնար Յուլիոս Կեսարի Յիշատակարանքին թարգմանութիւնը, զոր լրացուցած է մեծ հայկաբանին արուեստին համազօր շեշտով ու գոյնով: Նմանապէս լրացուցած է Սենեկայի Ճառերուն անաւարտ թարգմանութիւնը:

Անողոք հիւանդութիւն մը կը տառապեցնէր զինքը կեանքին վերջին շրջանին. 1876ի Ապրիլ 11ին կնքեց իր մահկանացուն՝ խոր սուգի մէջ համակելով Միաբանութիւնը:



ԳԵՐՊ. ԳԷՈՐԳ ԱՐՔԵՊ. ՀԻՒՐՄԻՒԶԵԱՆ
Ե. ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԱԲԲԱՀԱՅՐ

1876 տարւոյն ընտրական ժողովին մէջ ընտրուեցաւ Աբբահայր՝ Հ. Իգնատիոս Վ. Կիւրեղեան, ծնած Տրապիզոն 1833ի Փետրուար 14ին: Իր քահանայական ձեռնադրութիւնը ընդունած է 1845ին: Շատ ուշագրաւ եղած է իր գործունէութիւնը Մուրատ-Ռափայէլեան վարժարանին մէջ՝ որպէս աջակից Հ. Ղեւոնդ Ալիշանի որ տեսուչն էր 1866–1872: Ինքն է որ առաջնորդած է հրապարակագիր Գրիգոր Արծրունին հայերէն լեզուի ուսման մէջ, երբ սա Եւրոպայէն դէպի Կովկաս վերադարձին՝ Վենետիկ գալով 1870ին, ուզած էր ճանչնալ բանաստեղծ Նահապետը եւ իրմէ դասեր առնել. բայց նա չափազանց զբաղած ըլլալով՝ յանձնած էր զինքը Հ. Իգնատիոս Կիւրեղեանին, որ սիրով ուղղութիւն տուած է մեծ հրապարակագրին իր հայագիտական զարգացման մէջ:

Երբ վախճանեցաւ Սուքիաս Սոմալ Աբբահայրը, Միաբանութիւնը իր մէջ տեսաւ անոր արժանաւոր յաջորդը: Ան երիտասարդ հասակին մէջ ստանձնեց վանքին առաջնորդութիւնը եւ բոլորեց բեղուն գործունէութեան երկար շրջան մը: Աբբայ ընտրուելէն տարի մը վերջ 1877ի Մայիս 20ին ձեռնադրուեցաւ արքեպիսկոպոս, տիտղոսաւոր Տրայանուպոլսոյ: Իր շրջանին ծաղկեցան Տրապիզոնի, Նիկոմիդիոյ և Պարտիզակի առաքելութիւնները. Միաբանութեան Տպարանը զարգացաւ իր տուած գիտակից ուղղութեամբը եւ օժտուեցաւ նոր մեքենաներով ու գրերու տեսակներով:

Սիրող եկեղեցական արարողութեանց կանոնաւորութեան եւ հնութեան պահպանումին, օժտուած գեղեցիկ ձայնով եւ ըլլալով միանգամայն շարականագէտ մը՝ խնամք տարաւ ժամակարգութեան մատեաններուն ընտիր տպագրութեան: 1898էն վերջ հետզհետէ լոյս տեսան Կարգաւորութիւն հասարակաց աղօթից Հայաստանեայց Եկեղեցւոյ, երկու մասով՝ Ժամակարգութեան եւ Շարականներու 1898ին, Ժամագիրք առձեռն 1903ին եւ Ձայնքաղ Շարական 1907ին, վերջին ծայր խնամուած տպագրութեամբ հայկական խազերու: Թարգմանած է նաեւ հոգելից աղօթագիրքը Ս. Ա. Լիգուորիի՝ կոչուած Յաւիտենական առածք:

Բարեհամբոյր նկարագրով եղաւ սիրելի իր հպատակներուն եւ պատկառելի դէմք մը եկեղեցական ու քաղաքական իշխանութիւններուն առջեւ, սփռելով իր շուրջ սէր եւ ազնուականութիւն: Իր մահէն վերջ, որ տեղի ունեցաւ 1921ի Դեկտեմբեր 1ին, Միաբանութեան ղեկը վարեց որպէս տեղապահ՝ Հ. Յովհաննէս Վրդ. Թորոսեան մինչեւ 1929:



ԳԵՐՊ. ԻԳՆԱՏԻՈՍ ԱՐՔԵՊ. ԿԻՒՐԵՂԵԱՆ
Զ. ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԱԲԲԱՀԱՅՐ

Ծնած է Գաղատիա 3 Հոկտեմբեր 1877ին եւ Ս. Ղազար եկած 24 Դեկտեմբեր 1888ին։ Քահանայական ձեռնադրութիւնը ընդունած է 1899ին։ Ուսումնական մեծ կարողութեամբ օժտուած, հմուտ եւրոպական լեզուներու, լատիներէնի եւ յունարէնի, ներհուն բանասէր՝ շատ կանուխէն նուիրուեցաւ հայ լեզուի եւ հին հայ գրականութեան ու պատմութեան իր նախասիրած աշխատանքներուն։ Աշակերտեցաւ ընդհանուր լեզուագիտութեան եւ բանասիրութեան համար՝ Փրոֆ. Է. Թեղայի եւ յետոյ նոյն նպատակով յաճախեց Մոնաքոյի եւ Պերլինի համալսարանները։ 1912ին վարեց «Բազմավէպ»ի խմբագրապետութիւնը։ Երկար ատեն, 1919–1929, եղած է Միաբանութեան ընդհանուր Քարտուղարը։ Սրբակրօն, առաքելաջան ոգիով վառ՝ իր կեանքը զոհեց օգտակար ըլլալու ուրիշներուն, քիչ ժամանակ միայն տրամադրելով իր գրական երկասիրութիւններուն։ Ունի սակայն, շատ շահեկան յօդուածաշարքեր «Բազմավէպ»ի մէջ հայկական պատմութեան, եկեղեցական գրականութեան եւ գեղարուեստական ուղղութեամբ։ Շատ սրամիտ գիւտեր եւ անդրադարձութիւններ ունեցած է հայ բանասիրութեան կարգ մը հարցերուն մէջ։ Լատիներէնի թարգմանած է Հայ Եկեղեցւոյ Ժամագիրքը, տպագրուած 1908ին, նոյնպէս տպագրուած է իր Համառօտ Գրականութիւնը 1914ին։ Եթէ իր բազմաթիւ յօդուածները խմբուելու ըլլան՝ կրնան քանի մը հատոր լեցնել։

1929ի Սեպտեմբերին ընտրուելով Ընդհ. Աբբահայր Միաբանութեան, իր մտքին բովանդակ կարողութիւնը գործածեց զարգացնելու Միաբանութիւնը, զարկ տալով միանգամայն վանքին գրական գործունէութեան։ Աբբայութեան վեցամեայ շրջանը աւարտելով՝ հրաժարեցաւ իր առողջական տկար վիճակին համար։ Վախճանեցաւ 1947ի Մայիս 9ին՝ սուրբի համբաւով։ Մեծապէս յարգուած ու սիրուած դէմք մըն էր Վենետիկի գաւառին եկեղեցական իշխանութիւններէն. ժողովրդապետներ ու քահանաներ իրեն կը դիմէին յաճախ լոյս եւ խորհուրդ առնելու դժուարին խնդիրներու մէջ։ Փնտռուած հոգեւոր հայր էր կարգ մը ընտանիքներու. ունէր շատ մեծ գութ ու կարեկցութիւն թշուառներու եւ կարօտեալներու հանդէպ, կ՚այցելէր հիւանդանոցներն ու բանտերը՝ բարիք սփռելով միշտ շուրջը։ Մահէն վերջն ալ շատեր իրեն բարեխօսութեան դիմած են եւ ընդունած շնորհքներ։



ԳԵՐՊ. ՅՈՎՀԱՆ ՎՐԴ. ԱՒԳԵՐ
Է. ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԱԲԲԱՀԱՅՐ

1935 տարւոյն Ընդհանուր Ժողովի ընտրական նիստին մէջ Աբբայութեան աթոռին վրայ յաջորդեց Հ. Սրապիոն Վրդ. Ուլուհոճեան։ Ծնած է Խարբերդի Դատեմ գիւղը 14 Փետր. 1890ին։ Ս. Ղազար եկած է 1905ին եւ քահանայական ձեռնադրութիւնը ընդունած 1915ի Մայիս 23ին։ Հռոմի «Անճելիքում» Կաճառին մէջ կատարելագործեց յետոյ իր աստուածաբանական եւ եկեղեցական գիտութիւնները, եւ «Քաղկեդոնի Ժողովը եւ Հայերը» խորագրով աւարտաճառ մը ներկայացնելով ստացաւ վարդապետական աստիճանը։ Այնուհետեւ պաշտօնավարեց Հռոմի Մխիթարեան վանատան մէջ, եւ ապա Վենետկոյ Մուրատ-Ռափայէլեան եւ Սեւրի Սամ. Մուրատեան վարժարաններու մէջ՝ որպէս Ուսումնապետ։ 1935ի Օգոստոս 12ին, երբ ան ձեռք կ'առնէր Միաբանութեան ղեկը, ժամանակները շատ ծանր ու դժուարին էին, բայց իր խոհական ու քաղցր նկարագրով, հաւասարակշիռ եւ արիական հոգիով կրցաւ առաջնորդել զայն իր նպատակին։ 1960ին օծուեցաւ արքեպիսկոպոս Ս. Մարկոսի տաճարին մէջ Գրիգոր-Պետրոս Աղաճանեան ծիրանաւորէն։

Իր օրով բացուեցան Պիքֆայեայի Ընծայարանը եւ Հալէպի Վարժարանը։ Իր ամէնէն աւելի փայփայած ծրագիրներէն մէկն էր վանքին ընդարձակումը, որ իրագործուեցաւ յաջողութեամբ, 1949-1954ի ընթացքին, եւ վանքին առջեւ բացուեցաւ ղարաստաւոր հրապարակ մը, որով կղզին 14.000 մեթր քառակուսիէն անցաւ 28.000 մեթր քառակուսի տարածութեան։ Այս ընդարձակումը նպաստեց կղզիին գեղեցկութեան ու վայելչութեան։

Եղած է քաջալերող մը գրական շարժումին, տպարանի արդիացման եւ օժտումին լիթօկրաֆիք գործիքներով, եւ ամէն բանի՝ որ օգտակար տեսած է Միաբանութեան գործունէութեան եւ նպաստաւոր անոր զարգացման։ Հայացուցած է մաքուր աշխարհաբարով Ճիովաննի Փափինիի Չարչարանքի վկաները, եւ հրատարակած սահուն եւ ընտիր աշխարհաբարով Թարգմանութիւն մը Չորս աւետարաններու 1952ին եւ 1960ին։

Անողոք հիւանդութեան մը զոհ երթալով կնքեց իր մահկանացուն 1965ի Մայիս 16ին, խոր սուգի մէջ համակելով Միաբանութիւնը։



ԳԵՐՊ․ ՍՐԱՊԻՈՆ ԱՐ․ՔԵՊ․ ՈՒԼՈՒՀՈՃԵԱՆ
Ը․ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԱԲԲԱՀԱՅՐ



ԳԵՐՊ. ՀՄԱՅԵԱԿ ՎՐԴ. ԿԷՏԻԿԵԱՆ
Թ. ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԱԲԲԱՀԱՅՐ

1964ի ընդհանուր ժողովին մէջ, երբ Գերպ. Սրապիոն Արքեպ. Ընդհանրական Աբբահայրը, կանոնական տարիքին լրացումին պատճառաւ կը հրաժարէր՝ Միաբանութիւնը վարչութեան ղեկը յանձնեց, Հռոմի Ս. Գահին առջեւ, Ուխտիս Ընդհ. Գործակալ Հ. Հմայեակ Վրդ. Կէտիկեանի: Նորընտիր Աբբահայրը ծնած է Տրապիզոն 2 Հոկտեմբեր 1905ին եւ ընդհանուր կոտորածէն հրաշքով մը ազատելով հասած է Ս. Ղազար 8 Նոյեմբեր 1921ին: Քահանայական ձեռնադրութիւնը ստացած է 1930ին, յետ աւարտելու իր բարձրագոյն ուսումները Իմաստասիրութեան, Աստուածաբանութեան եւ Կանոնագիտութեան՝ Հռոմի համալսարաններուն մէջ: Պաշտօնավարած է նախ վանքին մէջ՝ որպէս դաստիարակ աշակերտութեան, յետոյ Մուրատ-Ռափայէլեան վարժարանի մէջ՝ որպէս ուսումնապետ եւ տեսուչ, եւ եղած է երկար ատեն ընդհանուր մատակարար: Իր նախասիրած մասնագիտութիւնն է կանոնագիտութիւնը. ծրագրած է ամբողջացնել հատորները «Կանոնագիրք Հայաստանեայց Եկեղեցւոյ» շարքին, որուն առաջին հատորը լոյս տեսած է 1941ին Առաքելական կանոնք խորագրով:

---

# ԳԼՈՒԽ Բ.

## ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ Ս. ՂԱԶԱՐԻ

### I - ՄՈՒՏՔԸ

*Վանքի մուտքին կը բացուի գեղեցիկ կամարակապ մը՝ գոյներու եւ ստուերներու խաղերով: Կամարակապին ճերմակ սիւները՝ դրասանգուած բաղեղներով եւ ծաղիկներով, կը ներշնչեն միշտ յաւերժական գարունի մը զուարթութիւնը: Այցելուն կը գրաւուի խոկոյն այս տեսարանէն, եւ երբ կը դարձնէ աչքերը դէպի քառանկիւնը, որ կը տարածուի անոր աջ կողմը յորդ կանանչութեամբ՝ խաղաղութեան ու լռութեան երկնային զգացումներ կու գան ողողելու անոր հոգին: Այս տպաւորութիւնները քաղած ենք այցելուներուն իսկ բերնէն:*

*Վարի նրբանցքին մէջ, որ կ՚առաջնորդէ դէպի եկեղեցիին մուտքը, կան հնախօսական կտորներ, ինչպէս մկրտութեան աւազան մը, գերեզմանաքար մը, Լիվիա Աուկուսթա կայսրուհւոյն արձանը (անգլուխ) գտնուած Աքուիլէիայի մօտ:*



Կամարակապ եւ քառանկիւն



Մուտքին կամարակապը



Զանգակատունը՝ տեսնուած քառանկիւնէն

## 2 - ԵԿԵՂԵՑԻՆ

Ըստ աւանդութեան, Ս. Ղազարի եկեղեցիէն առաջ, շուրջ 1200ին գոյութիւն ունեցած է կղզիին մէջ եկեղեցեակ մը յանուն Ս. Լեւոնի, որուն քովթարները տակաւին կը պահուին: Իսկ Ս. Ղազարի նուիրուած եկեղեցին հաւանաբար 1400ին կառուցուած է ցած եւ հարթ ձեղունով:

Մխիթար Աբբահայր, երբ ձեռնարկեց վանքի շինութիւններուն, առաջին գործը եղաւ նորոգել ու բարեզարդել եկեղեցին, նախ քան միաբաններուն յատկացուած յարկաբաժինները՝ համաձայն իր բացատրութեան թէ «Արժան է նախ զտունն Աստուծոյ շինել եւ ապա զմերս ի փառս Աստուծոյ»:

1721ին սկիզբ տրուած է եկեղեցւոյ նորոգութիւններուն: Կեդրոնական ձեղունին երկու կողմի պատերը ցած ըլլալով՝ ընկճող տպաւորութիւն մը կը թողուր. Մխիթար ուզելով աւելի շունչ ու վայելչութիւն տալ եկեղեցիին՝ բարձրացուց կողմնակի պատերը եւ առաստաղը վերածեց կամարաձեւի: Հիմնովին նոր շինել տըւած է Աւագ Խորանը մարմարակերտ կառոյցքով: Յետոյ շինել տուած է շատ պարզ ոճով Աւագ խորանին երկու կողմերը՝ երկու խորաններ եւս, մին նուիրուած Ս. Խաչին, միւսը՝ Ս. Գրիգոր Լուսաւորչին, իսկ ատեանին մէջ՝ Ս. Աստուածածնի եւ Ս. Անտոնի նուիրուած խորանները: Այս չորս խորանները աւելի ուշ, իր օրով վերաշինուած են վերջնական ու գեղեցիկ ճարտարապետութեամբ, ինչպէս են այսօր, հետեւեալ պատմական պարագաներու մէջ:

1735ին Ս. Աստուածածնի Ծննդեան նուիրուած խորանը վերաշինած է Վենետիկ բնակող ազգայիններէն՝ ծերունի Սահրատ Շեհրիմանեան: Սա ուխտ ըրած էր Ս. Աստուածածնի՝ որ եթէ ազատէ զինքը իր անբուժելի հիւանդութենէն, պիտի կառուցանէ անոր նուիրուած գեղեցիկ խորան մը: Մխիթար Աբբահայր այդ նպատակով աղօթել կու տայ իր միաբաններուն, եւ ստուգիւ քանի մը օր վերջ, անբուժելի դարձած հիւանդը յանկարծ հրաշքով մը կ'առողջանայ ու կը կատարէ իր ուխտը սրբատաշ ու գունաւոր մարմարներով կառուցանելով խորանը, որուն առջեւ պատրաստել կու տայ նաեւ դամբան մը իրեն համար, ուր յետոյ 1745ին կը թաղուի, եւ վրան ալ կը դրուի տապանագիր մը: Իւղաներկ նկա-



Եկեղեցին



Խորան Ս. Աստուածածնի Ծննդեան

րը՝ որ կը ներկայացնէ Ս. Կոյսին ծնունդը՝ գործ է Ֆ. Մաճճիոթթոյ իտալացի նկարիչին:

Երկու տարի մը ետք, Ս. Անտոնի խորանը կը վերակառուցուի մարմարակերտ յար եւ նման միւսին, նուիրատուութեամբ Զմիւռնիոյ Մինաս արքեպիսկոպոսին: Սա իբր գաղթական ապաստանած ըլլալով Վենետիկ, կ'այցելէ օր մը Ս. Ղազարի վանքը: Անկեղծ բարեկամութեամբ կապուելով Մխիթար Աբբահօր հետ եւ իմանալով որ աղքատութեան պատճառով Ս. Անտոնի խորանը մնացած է խեղճ ու անշուք վիճակի մէջ, իր ծախսերով շինել կու տայ զայն 1737ին: Ինքն իսկ կ'օրհնէ զայն եւ ձայնաւոր պատարագ մը կը մատուցանէ անոր վրայ: Խորանին աջակողմեան սիւնին խարիսխին վրայ քանդակուած է հետեւեալ արձանագրութիւնը.

Յիշատակ է սուրբ Սեղանս յարգոյ
Ակնցի Փերվազեան կոչեցելոյ
Մինասայ արքեպիսկոպոսի Զմիւռնիոյ:

Խորանին առջեւ շինել տուած է նաեւ իր դամբանը, որուն մէջ կը թաղուի 1757ին եւ վրան ալ կը դրուի տապանագիր մը: Մինաս արքեպիսկոպոս, 1737էն մինչեւ մահը, եղած է ձեռնադրիչը Մխիթարեան Հայրերուն: Ս. Անտոնը ներկայացնող նկարը՝ գործն է Ֆրանչեսքոյ Ծունեոյի, Մխիթարի հարազատ դիմագիծով:

Հազիւ աւարտած Ս. Անտոնի խորանը, Մխիթար Աբբահայր մտահոգուած էր միւս երկու խորաններու շինութեամբ, եւ ահա երկու ազգայիններ՝ Ստեփան Վարդանճեան եւ Նահապետ Պօղոսեան, իրարու ազգականներ եւ երկուքն ալ հարուստ վաճառականներ, Հարանդ գաւառէն եկած հաստատուած ըլլալով Վենետիկ, ապացոյցը կու տան իրենց սիրոյն եւ բարեկամութեան Ս. Ղազարի վանքին, կառուցանելով Ս. Գրիգոր Լուսաւորչի խորանը Հիմնադրին պատրաստած ծրագրին վրայ: Տրդատ Թագաւորի մկրտութիւնը ներկայացնող իւղանկարը, գործ Ֆրանչեսքոյ Ծունեոյի, կը շինուի նոյն բարերարներու ծախքով: Այսօր այդ արժէքաւոր նկարը փոխանակուած է միեւնոյն նիւթը ներկայացնող ուրիշ պատկերով մը, գծուած Նոյէ Պորտինեոնէն, միւսը անցած ըլլալով Թանգարանի բաժնին: Խորանին առջեւ կը շինուի նաեւ երկու բարերարներու դամբանը, ուր յետոյ կը թաղուին անոնք:

Իսկ Ս. Խաչի խորանը կը կառուցուի, 1738ին, Ստեփանոս Ծեհ-



Խորան Ս. Անտոնի

րիմանեանի նուիրատուութեամբ: Խաչելութիւնը, շինուած միակտոր ճերմակ մարմարէ, սեւ մարմարէ խորքի վրայ՝ հոյակապ գործ մըն է:

Երբ 1817ին, Միաբանութեան բարեկամ եւ բարերար Յակոբ աղա Սեղբոսեանի ծախսով, կը նորոգուի եկեղեցւոյ ամբողջ յատակը սպիտակ եւ կարմիր մարմարէ քարերով, յիշեալ բոլոր տապանաքարերը կը փոխադրուին փոքրիկ աւանդատան մէջ: Ամէն տարի, մեռելոց օրը, բարերարներու յիշատակը կը վերարծարծուի աղօթքով եւ մոմավառութեամբ՝ անոնց աճիւններու դամբաններուն վրայ:

Զանգակատան հիմերը դնել կու տայ ինքը Մխիթար, բայց իր յաջորդները կը տեսնեն աւարտը, որ տեղի կ՚ունենայ 1756ին:

Եկեղեցիի բեմը զանազան փոփոխութիւններու ենթարկուած է Մխիթար Աբբահօրմէ ետք: Ստեփանոս Մելքոնեանի աբբայութեան առաջին տարիներուն՝ բեմը եւ Աւագ խորանը բարձրացուցին եւ դասը, որ կը գտնուէր խորանին ետեւը, բերուեցաւ առջեւ:

Աւելի ուշ, 1897էն մինչեւ 1901, Իգնատիոս Կիւրեղեանի աբբայութեան ժամանակ է որ կատարուեցան վերջնական փոփոխութիւնները եւ նորոգութիւնները բեմին եւ աւագ խորանին: Եկեղեցական արարողութիւններու վայելչութեան համար վար առնուեցաւ աւագ խորանին ճակատը զարդարող սինաշարքը, ետ տարուեցաւ խորանը, բեմին կեդրոնը փոխադրուեցաւ Մխիթար Աբբահօր դամբանը իր գեղեցիկ վերտառութեամբ: Այս առթիւ, աւագ խորանին վրայ շինուեցաւ կամարաձեւ կոնքը կամ գմբէթը եւ բացուեցան հինգ գոթական պատուհաններ, որոնց գունաւոր ապակիները, պատրաստուած Ինսպրուք, դրուած են 1901ին: Կեդրոնի ապակին կը ներկայացնէ Ս. Ղազարը՝ բարեկամ Քրիստոսի, իսկ երկու կողմերը՝ Ս. Սահակ Հայրապետը եւ Ս. Մեսրոպ Վարդապետը:

Բեմին երկու կողմերու վերի մասին մէջ գծուած են Փաոլէթթի նկարիչէն՝ Ս. Պետրոս եւ Ս. Պօղոս առաքեալներու որմանկարները, ինչպէս ատեանի կամարներուն վրայ ազգային սուրբերու վեց մետալիոններ, որոնք կը ներկայացնեն մէկ կողմէն՝ Ս. Ղեւոնդ երէցը, Ս. Հռիփսիմէն, Ս. Ներսէս Լամբրոնացին եւ միւս կողմէն՝ Ս. Ներսէս Պարթեւը, Ս. Սանդուխտը եւ Ս. Վարդան զօրավարը: Նոյն նկարիչէն գծուած են նմանապէս, մուտքի դրան առաստաղին վրայ, Ս. Ներսէս Շնորհալին եւ բեմի առաստաղին



Շիրիմ Կոստանդին Ծուֆֆոլայի

*վրայ՝ Գրիգոր Նարեկացի. իսկ դասին երկու կողմերը Ս. Յովհաննէս Մկրտիչի եւ Ս. Ստեփանոս Նախասարկաւագի նկարները: Մուտքի դրան վրայ բացուած է գունաւոր վարդակ մը, ուսկից արեւուն ճառագայթները ներս կը թափանցեն բեկբեկուած, տալով եկեղեցիին արդէն իսկ ներշնչող խորհրդաւորութեան՝ նաեւ լուսաւոր զուարթութիւն մը: Այս բոլոր նորոգութիւնները կատարուեցան 1901ին՝ երկհարիւրամեայ յոբելեանի պատրաստութեան համար: Այդ ժամանակ է որ Իտալիոյ Մարկերիթա Մայր Թագուհին ալ նուիրած է թաւիշէ գեղեցիկ վարագոյր մը, որ արարողութեանց ատեն կը գործածուի, բաժնելու համար բեմը դասէն եւ ատեանէն:*

*Երբ տարիներ ետք, խոնաւութեան պատճառով, բեմին եւ ատեանին կամարակապները եւ ազգային սրբերու նկարները կորսնցուցին իրենց գոյներուն թարմութիւնը, 1948–49ին Օննիկ Մանուկեանի եւ ուրիշ բարերարներու նուիրատուութիւններով անոնք վերածուեցան գունաւոր խճաքարերու: Բեմին յատակը ամ-*

բողջութեամբ նորոգուեցաւ ընտիր մարմարով՝ Պր. Արմենակ Մէօթէմէճեանի նուիրատուութեամբ:

Դուրս կ՚ելլենք եկեղեցիէն ու կանգ կ՚առնենք փոքրիկ գաւիթին մէջ: Դրան երկու կողմերը կը գտնենք աւագ խորանի նախկին սիւները, զետեղուած հոն ի յիշատակ անցեալի պատմութեան: Անոնց քով պատին վրայ գրուած են լատիներէն եւ հայերէն գրաբար լեզուներով՝ Պիոս Է. Սրբազան Քահանայապետին՝ 1800 Մայիս 9ին, Ս. Ղազար ըրած այցելութեան արձանագրութիւնները, յետ իր ընտրութեան՝ որպէս գլուխ Տիեզերական Եկեղեցւոյ, Վենետիկի Ս. Գէորգ կղզիի Բենեդիկտեաններու վանքին մէջ, ժամանակին քաղաքական պայմաններուն պատճառաւ:

Եկեղեցիի դրան աջին կայ դամբանը Պետրոս Հայրապետ Կրէտի, բարերար եւ երրորդ կարգի եղբայր Մխիթարանութեան: 1940ին Թրիեստ մեռնելով՝ իր փափաքին վրայ իր մարմինը կը փոխադրուի այս դամբարանին մէջ, որ երկար ատենէ թափուր մնացած էր, պատրաստուած ըլլալով Աղեքսանդր Ռափայէլ Ղարամեանի համար, նոյնպէս բարերար եւ երրորդ կարգի եղբայր Մխիթարանութեան: Սա անակնկալ կերպով վախճանելով Լոնտրա, իր վերջին փափաքին համաձայն, կը թաղուի քաղաքին մօտակայքը իր կառուցած եկեղեցեակին մէջ: Դրան ձախ կողմը կայ վենետկեան հին արուեստով շինուած դամբարանը Կոստանդին Ծուքքոլայի, որ եղած է վարիչը եւ բարերարը կղզիին՝ ճանչցուած որպէս ուրկանոց: Սկիզբէն ի վեր անշարժ պահուած է այդ շիրիմը ի յարգանս իրեն: Անոր տակը, պատին վրայ, զետեղուած է տապանաքարը ջուղայեցի Պետրոս Շահրիմանեանին, որ վախճանած է 1803ի Յուլիս 14ին, եօթանասունըչորս տարեկան հասակին, ըստ լատին արձանագրութեան, որ երկու տողով հայերէն արձանագրութեան տակ նշանակուած է: Հայերէն վերտառութիւնն է հետեւեալը.

Աստ բստորեւ յիւր վիմափոր հանգչի շիրմի
Աղայ Պետրոս Շահրիմանեան ջուղայեցի:

Գաւիթի առաստաղին կեդրոնը զարդարուած է Ս. Կոյսին պաշտպանութիւնը ներկայացնող բոլորակ որմանկարով մը, գործ իտալացի նկարիչ Նոյէ Պորտինեոնին. անոր երկու կողմերը, աւելի փոքր բոլորակ որմանկարներով, ներկայացուած են Մխիթար պատանիին տեսիլքը Սեւան կղզիին մէջ, եւ Մանասէ ու Մարիամ

երկու սրբասուն կոյսերու տեսիլքը, որով կը յայտնուէր անոնց Աստուծմէ՝ Մխիթար պատանիին ապագան:

Դրան դիմացի պատին վրայ, աջ կողմը, զետեղուած է 1965ին, Ազգային մեծ Եղեռնի ոգեկոչումին առթիւ, յուշաքար մը հետեւեալ վերտառութեամբ.

Յանմոռաց յիշատակ
Բիւրաւոր վկայից Ազգիս Հայոց
Վասն Կրօնից եւ Հայրենեաց նահատակելոց
Որդիք Մխիթարայ նժդեհք ի Սուրբ Ղազար
Կանգնեն զայս արձան
1915 Ապրիլ 1965

Յուշաքարին առջեւ կը վառին միշտ անշէջ զոյգ մը կանթեղներ:

Դուրս ելլելով եկեղեցիին առջեւ բացուող նրբանցքէն դէպի քառանկիւնը՝ այցելուին ուշադրութիւնը կը գրաւէ լիբանանեան մեծ մայրին, որ իր հարիւր յիսուն տարուան կեանքով թեւատարած կ'իշխէ իր ոտքերուն տակ փռուած ածուներուն եւ յորդ կանաչութեան վրայ: Դէպի սեղանատուն տանող նրբանցքին վրայ կը գտնենք կարգ մը հնախօսական արժէքաւոր արձանագրութիւններ, ինչպէս Հռոմի գետնադամբաններէն բերուած գերեզմանական կափարիչ վէմ քարեր, փիւնիկեան արձանագրութիւն մը, եւն:

## 3 – ՍԵՂԱՆԱՏՈՒՆԸ

Տասնըվեց մետր երկարութեամբ եւ չուրջ եօթը մետր լայնքով գեղեցիկ եւ լուսաւոր սրահ մըն է սեղանատունը, որուն շինութիւնը աւարտած է 1739ի Հոկտեմբերին: Որմերը զարդարուած են սրբազան նկարներով՝ գործ իտալացի արուեստագէտներու: Գեղեցկագոյն նկարը, որ կը բռնէ խորքի պատը իր բոլոր ծաւալով՝ կը ներկայացնէ Յիսուսի վերջին ընթրիքը՝ գործ Փիեթրոյ Նովելլի (1728–1804) սիկիլիացի նկարիչին, որ պատրաստած է զայն 1780ին, Հռոմի մէջ, Միաբանութեան հրահանգին վրայ:

Առաստաղը ոսկեզարդ գերաններով՝ վենետիկեան արուեստի շնորհքը կը կրէ իր վրան, վայելուչ գոյներով, ձեւերով եւ սարքով: Սեղանատան մուտքին վրայ՝ զետեղուած է Մխիթար Աբբահօր խճանկար պատկերը, եւ անկէ քիչ մը վար՝ դրան քովթարին



Փիւթրոյ Նովելլի. – Վերջին ընթրիք

վրայ փորագրուած է. «Աստ լռութիւն է պահելի եւ Ս. Գրոց ուշ դնելի»: Ինք Մխիթար փորագրել տուած է զայն, հաստատելով այն օրէնքը՝ որով միաբանները եւ աշակերտները լռութեամբ պարտաւոր են ճաշել եւ ունկնդրել Սուրբ Գիրքը: Սովորութիւն է վանքին մէջ, ամէն օր կէսօր թէ իրիկուն՝ բեմէն կարդալ գլուխ մը Ս. Գիրքէն եւ յետոյ պատմական կամ աստուածաբանական գործ մը մեր նախնիքներէն:

Սեղանատան մուտքի բարաւորին վրայ կայ նաեւ հետեւեալ արձանագրութիւնը.

«Մենաստանս այս ըստ բոլորին
Շինեալ եղեւ ի փառս Փրկչին
Յաբբայութեան Սեբաստացւոյ
Մխիթարայ Վարդապետին»:

Վանքին բովանդակ կառուցումը Մխիթարի հանճարեղ մտքին արդիւնքն է. ինքն է անոր առաջնորդը, ճարտարապետը եւ վերահսկիչը: Հակառակ շատերու խնդրանքին կանգնելու յուշարձան մը ի յիշատակ իր կատարած հոյակապ շինութեանց, ինքը հաճած է միմիայն վերայիշեալ քանի մը տողերով պատմութեան յանձնել, համեստ ու անպաճոյճ ձեւով մը՝ անհրաժեշտ պարագան ու ժամանակը պատմական ձեռնարկին:

# 4 - ՄԽԻԹԱՐ ԱԲԲԱՀՕՐ ՍԱՆԴՈՒՂԸ

Սեղանատան քովէն կը բարձրանայ շքեղ սանդուղ մը, որ կը կոչուի «Մխիթար Աբբահօր սանդուղը»: Այդ գեղեցիկ սանդուղին յղացումը, կառուցումը՝ որ նոյնիսկ ճարտարապետներու հիացման արժանացած է, գործ է մեծ Հիմնադրին ճաշակաւոր



Մխիթար Աբբահօր սանդուղը

մօքին։ Պէտք է բարձրացնել աչքերը դիտելու համար շատ գեղեցիկ որմանկար մը՝ ճիշտ սանդուղին առաստաղին վրայ. այդ որմանկարը՝ գործ Թիէփոլեան նկարչական դպրոցին, կը ներկայացնէ Ամբակում մարգարէին յափշտակումը՝ կերակուր տանելու Բաբելոնի գուբը նետուած Դանիէլին։ Մխիթար դիտումնաւոր կերպով գծել տուած է զայն, իբրեւ երախտագիտութիւն աստուածային շնորհքին, որով զինքն ալ ազատելով նեղութիւններէ եւ դժուարին կացութիւններէն, առած փոխադրած է անդորր վայր մը, ծոցը վենետկեան լճակին՝ հիմնելու համար իր Միաբանութիւնը, համաձայն Աստուծոյ կամքին՝ օտար երկինքի տակ, բայց հոգիով միշտ կապուած իր ազգին եւ իր հայրենիքին հետ։

Սանդուղին պատերը կը զրուեն մեծադիր նկարներ. առաջինը աջին վրայ՝ Մարքոնի նկարիչինն է, որ կը ներկայացնէ վկայուհիի մը դատաստանը՝ դահին վրայ բազմած դատաւորին առջեւ։ Կ'աւանդուի թէ այս նկարին կէսը պահուած է Լենինկրատի Էրմիթաժին մէջ։

Քանի մը աստիճան բարձրանալով կը գտնենք վենետկեցի յոյն նկարիչի մը՝ Վասիլաքիի իւղանկարը՝ ճոխ եւ ուժեղ գոյներով, նիւթ ունենալով Ս. Հեղինէի օրով Ս. Խաչին յայտնութիւնը մեռելի մը յարութեամբ։ Այդ հրաշքին զօրութեամբ է որ կարելի եղած է զանազանել Քրիստոսի ճշմարիտ Խաչը աւազակներու խաչերէն։ Այդ մեծ նկարին քով՝ կայ ուրիշ մը, գրեթէ նոյն մեծութեամբ, վենետկեան դպրոցի գործ, եւ որ կը ներկայացնէ Դարեհ Ա.ի մահը, եւ ողբը Մեծն Աղեքսանդրի։ Դէմի պատին վրայ զետեղուած է «Քրիստոսի Թաղումը» Փալմա իլ Ճիովանէի գործ, որ յարգի է իր հնութեան եւ գեղեցկութեան համար։

## 5 – ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀԸ

Մխիթարի սանդուղի աւարտին կը բացուի պատկերասրահը եւրոպական եւ հայկական նկարներու՝ առանձին առանձին բաժիններով։ Կը մտնենք նախ հայկական պատկերասրահը, ուր աչքի կը զարնեն իսկոյն Յովհաննէս Այվազովսքիի ծովանկարները. «Վոսփորը վերջալոյսի պահուն», «Նաւաբեկութիւնը ծովուն վրայ»,

«Վենետկեան վերջալոյսը», «Արարատը», «Նափոլիի փարոսը», զոր ըստ աւանդութեան՝ հեղինակը վեց ժամուան մէջ նկարած է Ս. Ղազարի վանքին մէջ, երբ իր եղբօր Հ. Գաբրիէլ Այվազովսքիի տեսութեան համար եկած էր Կովկասէն, եւ մանաւանդ զմայլելի իր «Քաոսը», որ քերթուած մըն է ոգեկոչող աստուածային ստեղծագործութիւնը՝ լոյս սփռելու խաւարին մէջ եւ կեանք տալու անկերպարան ոչինչին: Արարիչը՝ յղացուած է որպէս «լոյս», որ կը պատռէ խաւարին ծոցը ու աստուածային լոյսին ստուերը կը կրկնուի մռայլ ամպերուն վերեւ եւ ջուրերու ծփանուտ մըկանունքին վրայ: Ժամերով կարելի է դիտել այդ նկարը եւ չյագենալ· այնքան հարուստ է գոյներով, խաղերով լոյսի ու մռայլի, կեանքի եւ շարժումի բանաստեղծութեամբ: Վանքին աւանդութեան համաձայն, այդ նկարը նուիրուած է հեղինակէն Լեւոն ԺԳ. Ս. Քահանայապետին, եւ որ իր կարգին նուիրած է Ս. Ղազարի հայկական Թանգարանին:

Այս նկարներու գիծին վրայ, առանձին դարանի մը մէջ, պահուած են Հայաստանի Հնութիւններու վարչութեան կողմէն նուիրուած եւ Հ. Վահան Յովհաննէսեանի ձեռքով բերուած հայկական արուեստի հնախօսական նմոյշներ, պեղումներով վեր հանուած, որոնց մէջ դիտելի են ուրարտական շրջանէն՝ Կարմիր Բլուրի աւերակներէն երկու ջրամաններ, պղինձէ աման մը եւ քարացած կորեկ՝ բոլորն ալ Քրիստոսէ ութը դար առաջ, ինչպէս նաեւ Դըւինի աւերակներէն Ժ. դարու գունաւոր աման մը: Երկրորդ դարանի մը մէջ կը պահուին արծաթէ քշոց, սաղաւարտ, սկիհներ, բաժակներ, պնակներ, ճարմանդներ եւ ուրիշ եկեղեցական ու աշխարհիկ առարկաներ, 1600-1800ի շրջանին հայ արծաթագործներու աշխատանքներ:

Այվազովսքիի ծովանկարներուն դիմացը ամփոփուած են ժանտաջուրերը Էտկար Շահինի, աշակերտ Մ. Ռ. Վարժարանի: Անոնց վրայ, դիտելի է գիծերու ճշգրտութիւնը, արտայայտութեան իրապաշտութիւնը եւ մանաւանդ կեանքն ու շարժումը, հեղինակին հոգիէն փոխանցուած, որ ունին զօրութիւնը գրաւելու եւ տպաւորելու: Շուրջ տասնեակ մը այդ ժանտաջուրերը, մեծ մասով վենետկեան եւ Ֆրանսական միջավայրի ոգին ու ապրումը կը պատկերացնեն, որովհետեւ Էտկար Շահին նկարչութեան նուիրուած է նաեւ Փարիզ եւ հոն ալ ապրած է երկար տարիներ:

Օսկար Շահինի ժանտաջուրերէն ետքը նոյն շարքին վրայ կը գտնենք կարգ մը ջրանկարներ Ս. Խաչատուրեանի, բոլորն ալ Փոքր Ասիոյ բարքերը, տարազները ներկայացնող, իրենց տեղական գոյնով հարուստ ու բազմազան: Կը յաջորդեն յետոյ, դէմ դիմաց, ուրիշ հայ նկարիչներու գործեր· այսպէս Կարապետ Ադամեանի «Մանուկներ ծովափին վրայ» լոյսով ու պայծառութեամբ լեցուն,



Յ· Այվազովսքի· — Քաոսը

Վ. Մախոխեանի ծովանկարները՝ «Քափրիի Ցարայլիոն»ները, «Ալեկոծութիւն Միջերկրականի վրայ», «Մխտրալի ժայթքը», «Աչի Քասթելլոյ» Սիկիլիոյ մէջ։ Ասլան Ապրոյ Բագրատունի իշխանի նկարած եւ նուիրած «Սառնոյի տեսարանը»։ Յետոյ դիմանկարներ՝ Ցէթիվաճեանի (Ալիշան), Աբիէլ Աճէմեանի եւ Նալբանդեանի։

Հայ նկարիչներէն գեղեցիկ գործեր ունին հոն՝ Գ. Բաշինջաղեան, Փ. Թէրլէմէզեան, Մ. Սարեան (նուէր Վազգէն Ա. Կաթողիկոսէն), Ե. Տամատ, Ա. Մուրատեան, Բ. Գոճամանեան, Օ. Աւետիսեան, Աշոտ Զօրեան, Ս. Երկանեան, Ց. Տիրիթ, Գառզու,



Յ Այվազովսքի - Նափոլիի փարոսը

Շարթ, Զ. Մութաֆեան, Մ. Մնտիկեան, Ճ. Կիւվերճինեան, Մարիամ եւ Երան Ասլամազեաններ, Յ. Զարդարեան, Յ. Ասատրեան, Դեւ, Աբրահամ Գուրգէնեան, Ժ. Օրադեան, Լեւոն Աղնաւուրեան, Վահա Սարգիս (Խաչատուրեան), Մանուէլ Թոլիկեան. Երեւելի ծաղրանկարիչներ՝ Սարուխան, Տիրան Աճէմեան եւ Ջիք Տամատեան, եւայլն: Այս գիծին վրայ նկատելի է Գ. Կարապետեանի Վատիկանի Բ. Տիեզերական Ժողովը ներկայացնող «Ecumenismo» խորագրով իւղաներկ նկարը՝ արժանացած առաջին մրցանակի:

Ետ դառնալով նոյն սրահէն՝ կը մտնենք Իսպէնեան Թանգարանը, ուր ամփոփուած են շատ յարգի նմոյշներ հայկական հնախօսութեան: Երկու ապակեփեղկերու մէջ զետեղուած են Կուտինահայ յախճապակիներէն գեղեցիկ նմոյշներ, որպէս արժէքաւոր փաստեր հայկական արուեստին՝ նախ քան քանդումը Միջին Արեւելքի եւ Փոքր Հայաստանի հայկական գործատուններուն, որոնց մէջ հայը ապացոյցը տուած է իր տաղանդին: Միւս ապակեփեղկը կ՚ամփոփէ հայկական ձեռագործներ եւ ձեռագիրներ՝ որոնցմէ ոմանք զարդարուած են նաեւ մանրանկարչութեամբ: Այդ շարքին մէջ ամէնէն յարգին եւ երեւելին է Թորոս Տարօնեցիին ծաղկած աւետարանը 1307 թուականին:

Պատին վրայ կախուած է հայկական գորգի մը նմոյշը ՌՄԿԶ (1266+551=1817) թուականը կրող: Բնիկ հայկական ոճ ունենալուն՝ առանձին նշանակութիւն մը ունի այդ գորգը: Հոն կը գտնենք նաեւ եկեղեցական սպասներ, սաղաւարտներ, կաթողիկոսներու շրջաբերական կոնդակներու ծաղկազարդուած պատճէններ, այդ բոլորը գուրգուրոտ խնամքով զետեղուած Պր. Պօղոս Իսպէնեանէն, որ յաճախ կ՚այցելէ վանքը եւ իր ընտանիքին նուիրուած այդ բաժինը կը ճոխացնէ միշտ նոր նուէրներով:

Բուն Թանգարանին դրան առջեւէն կ՚երկարի ուրիշ սրահ մը, ուր եւրոպական նկարիչներու, որոնց մէջ մեծ մասով իտալական դպրոցներու գործեր աչքի կը զարնեն. այսպէս «Տիրամայրը եւ Յիսուս Մանուկ» Լէոնարտօ տա Վինչիի դպրոցին նուիրուած, Փիէթրոյ Տուքայի «Ս. Ընտանիքը», Թիցիանոյի նուիրուած «Ս. Ընտանիք»ը, Կուիտոյ Ռէնիի նուիրուած «Ս. Թովմաս»ը, Ծայսի բնանկար մը, Տ. Մաճճիոթթոյի «Թակարդը» եւ վենետկեան տեսարաններ՝ գործեր զանազան հեղինակներու, եւն: Անոնց քով կայ երեք կտորով Ֆլաման կոպլէն մը, 1500էն, ներդաշնակ գոյներով:

## 6 – ԹԱՆԳԱՐԱՆԸ

*Թանգարանը, — ուր ամփոփած են արեւելեան զանազան հնութիւններ, գլխաւորապէս եգիպտական, հնդկական, յունական եւ հայկական, — ընդարձակ սրահ մըն է, վենետիկեան 700ի արուեստով եւ ճաշակով կառուցուած:*

*Մուտքին ձախ կողքը՝ նեղ ու բարձր ապակեփեղկի մը մէջ խնամքով դասաւորուած են եգիպտական ամէնէն յարգի արձանիկներ, դիցաբանական առարկաներ, Թանկագին «կատու»ն եւ եգիպտացիներէն պաշտուած կենդանիներու իսկական թերափներ, որոնք իրենց հարազատութեան համար ալ նշանաւոր են: Յարակից լայն ապակեփեղկին մէջ ցուցադրուած են կարգ մը յիշատակի առարկաներ, Աթոս լերան աշխատութիւններ, յարգի քարերու հաւաքածոներ, կարմիր բուստէ շինուած շատ յարգի խաչելութիւն մը եւ անոր ստորեւ Արամազդի գլուխը՝ հանուած Եփրատ գետէն:*

*Յիշեալ լայն ապակեփեղկին դիմացը՝ աւելի մեծ ապակեփեղկ մը կը ներկայացնէ վերի բաժնին մէջ՝ արծաթազօծ կողքեր աւետարաններու, ձեռագործ աշխատանքներ, բոլորն ալ հայկական սրբազան արուեստի ճշմարիտ նմոյշներ: Ատոնցմէ վար սրբազան սպասներ՝ սաղաւարտներ, ուրար եւ վակաս՝ արծաթ ու ոսկի թելերով բանուած, գործ Կ. Պոլսոյ հայ տիկիններու 1700ական թուականներուն, վարդապետական գաւազաններ, եւն: Վարի աստիճանին մէջ կարմիր թաւիշէ բարձի մը վրայ ցուցադրուած է Հայոց վերջին թագաւորին՝ Լեւոն Զ.ի սուրը, ոսկեզօծ տառերով: Նոյն ապակեփեղկի վարի յարկին մէջ պահուած են հայրենի հողին պեղումներէն հանուած հնախօսական առարկաներ, զէնքեր, եւն:*

*Կ'անցնինք, պատշգամին մօտ գտնուող, Թանգարանի նախամուտքին միւս երկու ապակեփեղկերուն: Աջին վրայ կան ամփոփուած, սկսելով վարի յարկէն, չինական, ճափոնական և հնդկական հնութիւններ· այս վերջինները փղոսկրի վրայ աշխատութիւններ են, նուրբ բանուածոյ ձեռագործներ· ինչպէս հովահար մը, խորան մը, եւն.: Վերի յարկին մէջ ամփոփուած են հայկական հնութիւններ, այսպէս օրինակ մը հայկական հին գորգի, գինուորական հին սաղաւարտ մը՝ ուրարտական շրջանէն մնացած, Կուտինահայ յախճապակիներու ընտիր հաւաքածոյ մը· անոնց մէջ յարգի*

են անոնք՝ որոնք կը կրեն արձանագրութիւններ, ընծայականներ, կամ անունը արուեստագէտին կամ ստացողին: Այսպէս այդ խումբին մէջէն կը զանազանուի իր գոյներով, իր խնամոտ արձանագրութեամբ՝ սափրուելու աման մը, եւ ուրիշ նման գործեր, բոլորն ալ յարգի: Հոն գուրգուրանքով կը պահուին նաեւ Հեթում Թագաւորի կնիքը եւ Զէյթունի հերոս Աղասիին գդակը:



Թիէփոլոյ· – Արդարութիւն եւ խաղաղութիւն

Նախամուտքի առաստաղին կեդրոնը կ՚իշխէ զմայլելի իւղանկար մը Ճեամպաթիսթա Թիէփոլոյի· կը ներկայացնէ արդարութիւնը եւ խաղաղութիւնը՝ երկու դիցուհիներու մէջ անձնաւորուած, որոնցմէ մին (արդարութիւնը) կը կրէ իր ձեռքին մէջ



Յ· Այվազովսքի· – Լորտ Պայրն կը հասնի Ս· Ղազար

կշիռքը, միսը (խաղաղութիւնը) ձիթենիի ճիւղ մը: Դիտելի է այդ նկարին վրայ, — որ իտալացի մեծ նկարիչին հասունութեան շրջանին պատկանող արտադրութիւն մ'է —, գոյներու ներդաշնակութիւնը, գծերու եթերային նրբութիւնը եւ փափկութիւնը, արտայայտութեան կատարելութիւնը:

Յարակից սենեակի բարաւորին վրայ կայ Նափոլէոն Գ·ի նըկարը, գործ Վինթերհալթերի, կայսրէն ձօնուած Փարիզի Մուրատեան վարժարանին· մինչ Թանգարանի մուտքին բարաւորին վրայ կը գտնենք Ալվիզէ Մոչենիկոյ տոժին իւղաներկ նկարը, պահուած որպէս յիշատակ անոր՝ որ Մխիթարեան Միաբանութեան պատմութեան մէջ իր մեծ դերը ունեցած է, շնորհելով կըղզին Մխիթար Աբբահօր եւ անոր յաջորդներուն: Պատերուն չորս բոլորը ուրիշ իւղաներկ նկարներ ծածկած են ճերմակութիւնը՝ արուեստով եւ գոյնով· Ամստերտամի երկու հայ վաճառականներ, Ռափայէլ Ղարամեան եւ Սամուէլ Մուրատեան (Մուրատ-Ռափայէլեան վարժարաններու երկու անմահ բարերարները)· Յիսուսի երեւումը առ Մարիամ Մագդաղինացի, եւն:

*Կը մտնենք Լորտ Պայրընի սենեակը: Այդ սրահին կէսը եղած է Լորտ Պայրընի հայերէն լեզուի դասատուութեան սենեակը, որ 1922ին ընդարձակուած է: Սենեակին ներքին բարաւորին վրայ դրուած է Լորտ Պայրընի իւղաներկ նկարը, հաւատարիմ օրինակ մը՝ Լոնտրայի Թանգարանին մէջ պահուած բնագրին, — կատարուած Մուրատ–Ռափայէլեան Վրժ. ի նախկին սան Յովհաննէս Փոր-Թուքալեանէն: Լորտ Պայրըն յաճախած է Ս. Ղազարի մենաստանը 1816–1818, մինչեւ իր մեկնումը Յունաստան, անոր ազատագրութեան պատերազմին մասնակցելու համար:*

*Իր անունով ճանչցուած այս սենեակին մէջ կը պահուի իր ստորագրութիւնը՝ շրջանակի մը մէջ: Հայերէն լեզուի հանդէպ իր հետաքրքրութիւնը եւ հայ մշակոյթին մասին իր գնահատական արտայայտութիւնները ծանօթ են արդէն:*

*Լորտ Պայրն Մխիթարեան Միաբանութեան եւ հայ ազգին հանդէպ ունի համակրութեամբ եւ գնահատանքով լի արտայայտութիւններ, զոր կ՚արժէ հոս մէջբերել.*

... Երբ 1816ին Վենետիկ հասայ, այնպիսի մտային վիճակի մը ենթարկուած էի, որ պէտք կը զգայի ծանր զբաղումի մը՝ որ երեւակայութեանս քիչ ասպարէզ թողուր եւ բաւական դժուարութիւն ընծայէր ձեռնարկած հետապնդումիս համար:

Այդ ժամանակամիջոցին, ես ալ, ուրիշ ճամբորդներու պէս, մեծապէս հետաքրքրուած էի ճանչնալու Ս. Ղազարի Միաբանութիւնը, որ կը թուի իր մէջ կեդրոնացուցած ըլլալ կրօնական հաստատութեան մը բոլոր լաւագոյն յատկութիւնները, առանց ունենալու անոնց որեւէ մէկ պակասութիւնը: Բնակավայրի հանգրստաւէտութիւնն ու մաքրութիւնը, անկեղծ բարեպաշտութիւնը, տաղանդն ու առաքինութիւնը անտարակոյս պիտի համոզեն աշխարհիկ մարդը, թէ կայ ուրիշ լաւագոյն վիճակ մը, նոյնիսկ այս կեանքին մէջ: Անոնք զաւակներն են նշուած ազգի մը, որ Հրեաներուն ու Յոյներուն պէս գերի մնացած կամ տարագրուած էր: Այս ժողովուրդը հարստացաւ, առանց կեղեքող մը ըլլալու եւ արժանի դարձաւ գովեստներու եւ պատիւներու, զոր կարելի է ունենալ ստրկային վիճակի մէջ, առանց խաբեբայութեանց: Թերեւս գոյութիւն չունին ժողովուրդներու տարեգրութիւններ, որոնք այնքան շատ բռնաւորուած ըլլան ոճիրներով՝ որքան Հայոց տարեգրութիւնները, որովհետեւ իրենց առաքինութիւնը խա-



Լորտ Պայրն

ղաղութեան համար իրենց տածած սէրն է, մինչդեռ իրենց բոլոր թերութիւնները յառաջ կու գան օտար տիրապետութենէն եւ անողոք բռնակալութենէն, որուն ենթարկուած էին: Այսուհանդերձ, հակառակ իրենց տխուր անցեալին եւ անստոյգ ապագային, իրենց հողամասը միշտ եւ բոլոր ժամանակներու համար պիտի մնայ աշխարհիս ամէնէն հետաքրքրականը եւ իրենց լեզուն, աւելի հրապուրիչ պիտի դառնայ, եթէ աւելի լաւ ուսումնասիրուի: Եթէ կ'ուզենք կարեւորութիւն տալ Ս. Գրոց, պիտի կրնանք հաստատել, թէ Աստուած Հայաստանի մէջ հիմնեց դրախ-



Լորտ Պայրն եւ հայերէնի իր ուսուցիչը՝ Հ. Յարութիւն Աւգերեան

տը եւ Հայաստանի մէջ է որ հանդարտեցան ջրհեղեղին ջուրերը. իսկ աղաւնին ալ ազատ տեղ մը գտաւ իր ոտքերը դնելու համար: Բայց պէտք է ըսել, որ երկրային դրախտը կորսուելէն ետք, բոլոր աղէտները սկսան յարձակիլ այս երկրին վրայ ու թէեւ դարերով ունեցաւ ան բաւական զօրաւոր թագաւորութիւն մը, սակայն եւ այնպէս կորսնցուց իր անկախութիւնը: Պարսիկներն ու Թուրքերը աւերեցին այս երկիրը, ուր Աստուած ստեղծած էր մարդը «ըստ պատկերի իւրում»:

*Այս մատենադարանին մէջ խնամքով պահուած են Թանկագին գիրքեր, բայց լատին եւ յոյն դասականներէն, եւրոպական գրականութեանց յարգի գլուխ-գործոցները, հսկայ հատորներ խաչակիրներու պատմութեան վերաբերեալ, Եգիպտոսի պեղումներու արդիւնքը պարունակող մեծադիր հատորները՝ Նափոլէոն Ա. կայսեր հրահանգով հրատարակուած: Այս գիրքերը մեծ մասամբ նուէր են Եազուպ Արթին փաշայի:*

*Սորը այդ սենեակին՝ պահուած է խնամքով, թէք փայտով շինուած եւ փղոսկրէ բանուածքով՝ հնդկական զմայլելի դահ մը, որ ժամանակին պատկանած է Թահմազ Ղուլի խանին: Պարսիկնե–*



Լորտ Պայրընի սենեակը (այժմ մատենադարան)



Եւրոպական մատենադարան եւ թանգարան

րէն գրաւուած եւ Պոլսոյ շուկային մէջ աճուրդի հանուած այդ մեծարժէք գահը, 1751ին «սէտէֆճի» Գրիգոր աղան գնելով՝ նըւիրած է Ս. Ղազարի Թանգարանին: Գահին առջեւ դրուած է պարսկական նուրբ արուեստով մանրանկարուած կլոր սեղան մը, ոսկեգոյն խորքով, 1700ի գործ: Գահին քով կը գտնենք Յիսուսի փշեպսակ գլուխը ներկայացնող իւղաներկ գեղեցիկ նկար մը, հաւանաբար գործ վենետկեցի մեծ նկարիչ Փալմա Իլ Վէքքիոյի:

Թողլով Լորտ Պայրընի սենեակը եւ քանի մը աստիճաններէն բարձրանալով կը մտնենք մեծ գրատունը՝ որ միանգամայն Թանգարան է արեւելեան եւ հայկական արուեստի:

Այդ գրատունը ամբողջապէս գործ է նրբաճաշակ հիմնադրին: Այդ լուսաւոր սրահը, — ուր շուրջ 30·000 յարգի գիրքեր պահուած են Մխիթար Աբբահօր ձեռքով շինուած ընկոյզէ դարաններու մէջ, — զարդարուած է վենետկեան արուեստով: Առաստաղին կեդրոնը հաւկթաձեւ բոլորակի մը մէջ ներկայացուած է Աղեքսանդրացի նահատակ Սրբուհի Կատարինէն: Սա ճանչցուած է որպէս պաշտպան քրիստոնեայ ջատագովներու եւ փիլիսոփաներու. Նկարին մէջ նէ, իր աստուածաբանութեամբը, կ՚ապացուցնէ դատաւորին՝ քրիստոնէական հաւատքի ճշմարտութիւնը: Առաստաղին միւս երկու բոլորակները՝ մին նուիրուած արեւելեան եկեղեցիի եւ միւսը արեւմտեան եկեղեցիի հայրերուն, շինուած են 1754ին՝ Մխիթար Աբբահօր տուած գաղափարին վրայ, որով իրարու կը կապէր Արեւելքն ու Արեւմուտքը: Այդ երեք որմանկարները գծուած են Ֆրանչեսքոյ Ծունեոյէն՝ մին երեւելի Թիէփոլոյ Ճեամպաթիսթայի աշակերտներէն: Առաստաղին մնացած բոլոր մասերը եւ չորս պատուհաններու վերի մասերուն չորս աւետարանիչները, Հաւատքը՝ խորհրդանշական ոճով պատկերացուած մուտքի բարաւորին վրայ, բարձրաքանդակ նուրբ աշխատանքներ են գաճէ շինուած:

Թանգարան-մատենադարանի մուտքին ձախակողմը կը գըտնենք Նափոլէոնի որդի «Էկլոնի» գաճէ արձանիկը ապակեայ պահարանի մէջ առնուած, որուն հեղինակն է Քանովա նշանաւոր արձանագործը: Այս գաճէ արձանը վանքին նուիրած է Քանովայի խորթ եղբայրը՝ Եպս. Սարթորի Քանովա: Անմիջապէս քովը կայ վենետկեան արուեստով գրակալ մը՝ ընկոյզէ փայտով աշխատուած եւ քանդակուած, որ կը ներկայացնէ թեւատարած արծիւ մը: Կը կրէ 1751 թուականը:

Դիմացը կան Կարապետ Մաթոսեանէն նուիրուած՝ Ալիշանի եւ Ե. Քոչարի գործերէն՝ Գերպ. Ի. Կիւրեղեանի կիսանդրիները: Անոնց քով է նաեւ երգահան Կոմիտաս Վարդապետի մահադիմակը:

Քիչ մը աւելի յառաջանալով կը գտնենք եգիպտական մումիան: Հոս ամէն այցելու երկար կանգ կ'առնէ ու կը խորհրդածէ հիասթափումով մահուան ու կեանքի վրայ, ունայնութեան վրայ փառքերու եւ մեծագործութեանց: Ըստ եգիպտագէտ հնախօսներու, ինչպէս Ունկարելլի եւ Տապա, ամէնէն խնամքով պահպանուածն է, համեմատութեամբ աշխարհի վրայ եղած ուրիշ մումիաներու: Եգիպտական այդ մումիան, ըստ Ունկարելլիի 3500, իսկ ըստ Տապայի 2200 տարուան հնութիւն ունի: Գլուխը, ակռաները, ոտքերն ու եղունգները տակաւին իրենց ամբողջականութեան մէջ մնացած, ապացոյց են մարդկային մարմինները զմռսելու եգիպտական այն եզական արուեստին, որուն գաղտնիքը այժմ ծածկուած է հնութեան խորհրդաւորութեան մէջ: Մումիան պատուած է ժամանակին կտաւով մը՝ նոյնպէս անմաշ մնացած. իսկ վրան ծածկուած է ապակեայ գունաւոր ուլունքներով հիւսուած պատանքով մը, ուր կը նշմարուին դիցաբանական էակներ. բզէզը՝ նշան անմահութեան, Իրիս եւ Իսիրիս աստուածները: Գունաւոր պատանքին վրայ դրուած է ուղեղիկը (cervelet), զոր եգիպտացիները մեռելներու գանկէն հանելու եւ առանձին պահելու սովորութիւնն ունէին:

Մումիան կը ներկայացնէ եգիպտացի քուրմի մը զաւակը, Նեմենֆէթամէն կոչուած եւ երիտասարդ հասակին մէջ մահացած: Մումիան վանքին նուիրուած է 1825ին Պօղոս Պէյ Եուսուֆէն՝ որ առաջին Նախարարն էր Եգիպտոսի փոխարքայ Ալի Փաշային:

Նոյնպէս թանկագին է դագաղը (sarcofage) մումիային, նոյնքան հին եւ նոյնքան մեծարժէք որպէս աշխատանք: Կափարիչը եւ ներքին կողմը ծեփուած են մեհենագրոշմ (երոկլիֆ) արձանագրութիւններով, նուիրուած վախճանեալի կեանքին, յիշատակութիւններով «բարերար» աստուածներու: Բացի յատկանշական պատկերներու գծագրութիւններէն, որոնք իրենց գոյներուն կենդանութեան մէջ մնացած են, զմայլելի է մանաւանդ ժանտաթղենիէ փայտին այդքան դարերու ընթացքին անաղարտ եւ անմաշ պահպանութիւնը:

Մումիային ապակեայ պահարանին առջեւ, կան ուրիշ կա-



Եգիպտական մումիան

րեւոր հնութիւններ։ Անոնց քով դրուած են Պետրոս Ադամեանի երկու խաղերը։ Ատոնք երկու պնակներ են, որոնց խորքին վրայ, ծածկուած մոմի թեթեւ մուրով, գծուած են ատամնակրկիտով Համլէթի եւ Արքայ Լիրի պատկառելի գլուխները։

Մումիայի դիմաց, դէպի Լիտոյ նայող պատուհանին առջեւ, ուրիշ ապակեայ մեծ պահարանին վերի մասին մէջ պահուած են հայկական դրամներ, որոնց հնագոյնները Տիգրան Մեծի ժամանակէն են եւ նորագոյնները Հայկական Կիլիկիոյ Թագաւորութեան շրջանէն։ Նոյն պահարանին երկու վարի յարկերուն մէջ զետեղուած են հեռաւոր արեւելքի կեանքը պատկերացնող հնդկական եւ չինական հնութիւններ։ Տաճարներու, աստուածներու (Պուտտա-



Ֆապրիս - Գրիգոր ԺԶ. Սրբազան
Քահանայապետ

յի) արձանիկներ, ընտանեկան եւ շուկայի կեանքէն քանդակներ, առարկաներ, որոնք բոլորն ալ կը ծառայեն գաղափար մը տալու խոր արեւելքի ժողովուրդներու բարքին ու կեանքին:

Հնդկական արժէքաւոր հնութիւն մըն է, 1830ին Մատրասցի Հայազգի Լազարովիչէն ղրկուած պապիրոսը՝ որ կը պարունակէ ծիսական բանաձեւը, պուտտայական քուրմերու ձեռնադրութեան, փալի լեզուով՝ մին սանսքրիթի կրօնական գաւառաբարբառներէն: Պապիրոսները ընդհանրապէս գլանաձեւ են, մինչդեռ ասիկա կը բաղկանայ տասներկու տախտակներէ 55×10 հրդմ. չափերով եւ ոսկեզիր տառերով:

Քանովայի աշակերտ Ֆապրիսի գործ է Գրիգոր ԺԶ. Ս. Քահանայապետը ներկայացնող արձանը՝ Քարրարայի մարմարով շին-



Հայկական Ձեռագիրներու բաժինը
Մխիթար Աբբահօր կիսանդրիով

ուած, եւ ապակեայ պահարանի մէջ առնուած, կճեայ պատուանդանի վրայ կանգուն: Անոր դէմը ուրիշ արձան մը՝ Ֆրանսացի Լէպրէոն արձանագործէն շինուած 1768ին՝ որ կը ներկայացնէ Կղեմէս ԺԳ․ Սրբզ․ քահանայապետը: Երկու արձաններն ալ երկու գլուխ գործոցներ են:

Կը մտնենք հայկական ձեռագիրներու յատկացուած բոլորակը: Հոս ազգային հին պատմութիւնը, հայ գրականութիւնը, հայ արուեստը՝ կորուստէ փրկուած թանկագին գանձերով, հրապուրիչ է ամէն հայ սրտի: Եթէ օտարը կու գայ զմայլելու հայ ժողովուրդի արտադրական անսպառ կորովին վրայ, հայը պարծանքով կը հաղորդուի իր անցեալի գեղեցկութիւններով: Բոլորակը ամբողջապէս նուիրուած է ձեռագրական ճոխ հաւաքածոյի ցուցադրութեան: Պատերը ծածկուած են ապակեփեղկերով, որոնց մէջ 3500 ձեռագիրներ կը պահպանուին խնամքով, իւրաքանչիւրը իր առանձին թուանշանով եւ ամբողջութիւնը դասաւորուած եւ ցուցակագրուած ուրոյն մատեաններու մէջ: Աստուածաշունչ, ճառընտիր, մաշտոց, պատմագիրներ, սուրբ հարց թարգմանութիւններ, մեկնողական գործեր զանազան դարերու, հայ աշուղային գրականութիւնը հոն իրենց տեղն ունին, եւ որոնցմէ շատեր առարկայ եղած են Մխիթարեան Հայրերու տքնաջան ուսումնասիրութիւններուն եւ հրատարակութեան: Տակաւին կան ձեռագիրներ՝ նիւթ ապագայ ուսումնասիրութիւններու: Սրբազան մատեանները կը պարունակեն մանրանկարներ, լուսանցազարդեր, խորանանկարներ, հայկական մանրանկարչութեան գեղեցիկ նմոյշներ, Թ․ դարէն մինչեւ ԺԷ․ դար երկարաձգուող շրջաններու: Մաս մը այդ կարգի սրբազան մատեաններէն՝ ցուցադրուած են այցելուներուն համար, սրահին կեդրոնը զետեղուած բոլորակ դարանին մէջ:

Ձեռագրատան խորը կը հսկէ Մխիթար Աբբահօր մարմարեայ կիսանդրին, գործ Ֆապրիսի 1833ին: Անոր դէմը կայ Ալիշանի իւղաներկը՝ գործ Ն․ Պորտինեոնի․ մեծ գիտնականը եւ մեծ բանաստեղծը իր գրասեղանին առջեւ, արդէն ծերունի, իր գրիչը ձեռքը, նուիրուած է գրական աշխատանքի: Այդ ներշնչող նկարը ամէն մխիթարեանի տիպարն է, անձնանուէր զոհուած հայ գրականութեան եւ պատմութեան, հայ լեզուի եւ ընդհանուր հայ մշակոյթի ուսումնասիրութեանց:

Ալիշանի իւղաներկէն վար զետեղուած է պատմականօրէն շատ

Հետաքրքրական վկայաթուղթ մը լատին լեզուով, ուր Լեւոն Դ. Հայոց թագաւորը՝ առեւտրական յարաբերութեանց դաշինք կը դնէ ընդմէջ Կիլիկեան Հայաստանի եւ Ճենովայի ու Սիկիլիոյ վաճառականներուն։ 1271ի եւ 1331ի այդ վաւերաթուղթերը, զոր Ա-




Նոյէ Պորտինեոնի. — Հ. Ղեւոնդ Ալիշան

լիշան դիւաններէն հանելով քննած, ուսումնասիրած եւ հրատարակած է արդէն «Սիսուան»ին մէջ՝ իր փափաքին վրայ կախուած են ձեռագրատան մէջ, որպէսզի հայ եւ օտար այցելուներու ուշադրութեան առարկայ ըլլան։

Հոն պատին եզերքը, շրջանակներու մէջ առնուած են քանի մը

մագաղաթեայ էջեր, կիսուեր, այրած կամ կտրուած, ցոյց տալու համար թէ ի՛նչ վիճակի մէջ կը գտնուէին յաճախ ամէնէն յարգի ձեռագիրներն ալ։ Ցուցադրուածը Եղիշէի պատմութեան մէկ էջն է, «Գահնամակ ազատաց Հայոց հաստատեալ խնդրով եւ կնքով Ս. Սահակայ յամին 428», զոր վանքին նուիրած է Յ. Մկրտիչ Էմին 1883ին։ Ուրիշ էջ մը կը ներկայացնէ Եղիշէի Ե. յեղանակի սկզբնաւորութիւնը այրած ու փճացած. «Մեծ է սէրն Աստուծոյ քան զամենայն մեծութիւն երկրաւոր...» սկզբնաւորութեամբ։

Իջնելով երեք աստիճաններէ՝ կը մտնենք դարձեալ մեծ սրահը, ուր ձգելէ առաջ՝ հիւրընկալող վարդապետը արձանագրել կու տայ այցելուներու անունները։ Երկու մատեաններ սահմանուած են, մին ազգայիններու, միւսը օտարներու համար։ Յետոյ կան ուրիշ երկու մատեաններ եւս, մին բարձրաստիճան անձնաւորութիւններու համար եւ երկրորդը՝ Ոսկեմատեանը՝ իշխանական, թագաւորական տուներու անձնաւորութեանց յատկացուած։ Այդ մատեաններու մէջ կան ստորագրութիւններ դեսպաններու, զանազան երկիրներու նախարարներուն, իշխող կամ աքսորեալ թագաւորներու, զօրավարներու, նախագահներու։ Նշանաւոր անձնաւորութեանց կարգին կը գտնենք անունները՝ Աւստրիոյ կայսրերուն, Կալլէսի և Բրուսիոյ իշխաններուն եւ իշխանուհիներուն, Ռուսիոյ Աղեքսանդր Բ. Ցարին՝ որ նուիրած է վանքի մատենադարանին Սինայական ձեռագրին նմանատիպը չորս հատորներու մէջ, Շուետի եւ Նորուեկիայի Մայր Թագուհի Յովսեփիայի՝ որ նուիրած է Օսկար Բ.ի բոլոր գործերը փառակազմ հատորներով, իտալական Սաւոյիոյ տան թագաւորազուններու եւ իշխանազուններու, Վիկտոր Էմմանուէլ Գ.ի, որ նուիրած է իր դրամագիտութեան հատորները, Մարկարիտա եւ Էլէնա թագուհիներուն, Ումպերթոյ թագաժառանգ իշխանին եւ Պելճիոյ Մարիա Ժոզէ իշխանուհիին, Պուլկարիոյ Պորիս թագաւորին եւ Եոհաննա թագուհիին, Հոլանտայի Էմմա թագուհիին, Ռումանիոյ Ֆերտինանտ թագաւորին եւ թագուհիին, Իտալիոյ Աոսթայի դուքսին։ Իտալական կառավարութեան նախագահներէն՝ վերջին շրջանիս՝ Էյնաուտիին, Ֆանֆանիին, Շելպային։ Մեծանուն գրագէտներ՝ Լորտ Պայրըն, Ռըշքին, երգահաններ՝ Վակնէր, Տոնիծէթթի, Ռոսսինի, Վէրտի, Սթրավինսքի, եւ մերիններէն՝ Կոմիտաս Վարդապետ եւ Արամ Խաչատուրեան հոն են իրենց ստորագրութիւններով։

## 7 – ԱՐՈՒԵՍՏԻՑ ԵՒ ԳԻՏՈՒԹԵԱՆՑ ԹԱՆԳԱՐԱՆԸ

*Առանձին սրահ մը յատկացուած է* Արուեստից եւ Գիտութեանց թանգարանին, *կառուցուած աւելի ուշ 1870ին, Հ. Մ. Քաջունիի խնամքով եւ գեղարուեստական ճաշակով: Հոն ամփոփուած են հաւաքածոներ զմռսուած թռչուններու, բաժնուած իրենց դասակարգութեանց, ամէնէն փոքրէն մինչեւ ամէնէն մեծը, ջրային կենդանիներու, սողուններու, անդամազննական նիւթերու, բնա-*



Արուեստից եւ գիտութեանց թանգարանին սրահը

*կան, բնաբանական, տարրաբանական, հանքաբանական գիտութեանց վերաբերեալ առարկաներու, որոնց նպատակը եղած է վանքի բարձրագոյն կարգի աշակերտներու փորձառական քննութեանց օժանդակումը եւ դիւրացումը:*

*Սրահին առաստաղը զարդարուած է Փաոլէթթիի «Արուեստ-*



Փառլէթթի. – Մխիթար ցոյց կու տայ կղզին
Մայր Վենետկոյ

ները» ներկայացնող նկարով մը եւ անոր երկու կողմերուն՝ զոյգ բոլորակներու մէջ՝ «Մխիթարի մուտքը Ս. Ղազար», եւ «Հայաստանի յարգանքը Վենետկոյ»։ Ամբողջ սրահին շուրջբոլորը, պատուհաններէն ու դռներէն վեր, զետեղուած են մետալիոնները մեծագոյն հանճարներուն, արեւմուտքի եւ արեւելքի, որոնց մէջ նաեւ հայկական մեծ դէմքերու, ինչպէս Հայկի, Խորենացիի, Եզնիկի, Անանիա Շիրակացիի եւն։

Արուեստից եւ գիտութեանց այս թանգարանին արտաքին ճակատը զարդարուած է վանքին զինանշանով, որուն ստորեւ գրուած է թուականը շինութեան (1870)։ Մինչ պատշգամին երկու կողմերը՝ երկու մեծ արձաններ՝ մէկը Հայկի՝ Հայոց նահապետին նուիրուած, միւսը Վաղարշակ Թագաւորին՝ կը պահպանեն արուեստի տաճարը։



Ս· Ղազար – Զանգակատունը

## 8 – ՏՊԱՐԱՆԸ

Մխիթարեան գրական արտադրութեանց աշխատանոցն է տըպարանը, հաստատուած Ս. Ղազարի մէջ 1789էն ի վեր: Սկիզբը Մխիթարեանները օգտագործած են «Անտոն Պորթոլիի» տպարանը Վենետիկի մէջ՝ օժտուած հայկական տառերով, անկէ ետք «Դեմետրեայ Թէոդոսեանց»ը մինչեւ վերոյիշեալ թուականը: Վենետիկէն մեկնած են առաջին հրատարակութիւնները՝ Պոլիս, Իզմիր, Կալկաթա եւ այլուր, հոն ուր հայութեան կորիզ մը գոյութիւն ունեցած է: Նախնեաց գործերու հրատարակութիւններ, պատմաքննական ուսումնասիրութիւններ, բանասիրական մենագրութիւններ, գրական ու բանաստեղծական գիրքեր, թերթեր՝ «Բազմավէպ» եւ «Գեղունի», իրենց բազմադոյն եւ հետաքրքրական էջերով, եւ վերջերս «Մխիթարեան Ընտանիք» դպրոցական ամսաթերթը ցրուած են ազգին մէջ: 1843էն ի վեր է որ «Բազմավէպ»ներու շարքը մանաւանդ, աշխարհաբար լեզուին տուած իր ընտիր ու մաքուր ուղղութեամբ, բացած է նոր ուղի ազգային եւ մարդկային գիտութեանց համար: Գիտական մարզի մէջ՝ բնաբանական, տարրաբանական, հանքաբանական, բուսաբանական, աստղաբաշխական գիտութիւնները դիւրամատչելի եղանակով մօտեցուցած են հայ ժողովուրդին: Եւ այնուհետեւ բազմաթիւ հրատարակութիւններ, որոնց թիւն անգամ սահմանելը դժուար է, դասագիրքի կամ ուսումնասիրութիւններու ձեւով՝ անընդհատ լոյս տեսած են Մխիթարեան տպարանէն: Բացի ժողովրդական նկարագիր ու հանգամանք ունեցող գործերէ, նաեւ քննական հրատարակութիւններ պարծանքը եղած են բազմալեզուեան տպարանին: Կը կոչուի բազմալեզուեան ճիշտ այն պատճառով՝ որ զանազան լեզուներու տառերով օժտուած ըլլալով հնուց ի վեր՝ նշանաւոր դարձած է Իտալիոյ տպարաններուն մէջ. այդ համբաւը կը տեւէ մինչեւ այսօր: Այս տպարանէն լոյս տեսած են 1810է ասդին բազմաթիւ լեզուներով եւ վերջինը 1882ին, 36 լեզուով՝ Ս. Ներսէս Շնորհալիի «Հաւատով խոստովանիմ»ը, եւ 1944ին՝ 28 լեզուով իտալ. Ցակերածծի բանաստեղծին «Ararat, elegia armena» քերթուածը: Հոնկէ լոյս տեսած է Հայկազեան (Մխիթ. Աբբահօր) եւ Նոր Հայկազեան (Աւետիքեան-Սիւրմէլեան-Աւգերեան՝ երից վարդապետաց) բառարանները, վերջինը մանաւանդ ակադե-

մական լրջութեամբ եւ խորութեամբ, ճոխութեամբ եւ ճշգրտութեամբ վկայութիւններու: Այսօր իսկ այդ հրատարակութիւնը կը մնայ միակը իր տեսակին մէջ՝ անգերազանցելի եւ անմրցելի: Հ. Մ. Զամչեանի եռահատոր Հայոց պատմութիւնները, Հ. Ղ. Ինճիճեանի Հնախօսութիւնը եւ Ստորագրութիւնը Հայաստանի, Աւետիքեաններու եւ Աւգերեաններու աստուածաբանական եւ բանասիրական գործերը, Ալիշանի տեղագրութիւնները, Հացունիի հին հայ տարազին պատմութիւնը, Հայուհին պատմութեան առջեւ, Հ. Ա. Ղազիկեանի թարգմանութիւնները, եւն.: Անպակաս եղած են անցեալին մէջ մեկենասներ կամ բարերարներ Մխիթարեան տպարանին. այսպէս Ղարամեան եւ Տիւզեան գերդաստաններ, եւ վերջերս Հայրապետ Կրէտ եղած են օժանդակողներ Մխիթարեանց գրական գործունէութեան ձեռնարկներուն. անմոռանալի անուններ բոլորն ալ:

Մխիթարեան տպարանը գեղարուեստական յայտնի ձկտումներ եւս մշակած է, մանաւանդ 1800–1850ի շրջանին, երբ վիմատպական կարելիութիւններ գոյութիւն ունեցած են հոն. ապացոյց՝ այն բոլոր միագոյն գեղարուեստական նկարներու տպագրութիւնները, որոնք այնքան գեղեցիկ և յաջող եղանակով լոյս տեսած են անկէ եւ յաջորդ տարիներուն ալ շարունակուած: Այսպէս, օրինակ մը տալու համար, յիշենք Բագրատունիի «Հայկ Դիւցազն»ի կամ Գերպ. Ե. Հիւրմիւզի «Բուրաստանք»ի պատկերները. անոնք բոլորն ալ վիմատիպներ են, կատարուած Ս. Ղազարու մէջ: Այս պարագան ցոյց կու տայ թէ Մխիթարեանները քալած են միշտ զուգընթաց ժամանակին զարգացման հետ: Այսօր ալ Մխիթարեան տպարանը օժտուած է արդիական վիմատիպ կարելիութիւններով 1956էն ի վեր, երբ ձեւն ու պատրաստութիւնը այդ արուեստին փոխուած են եւ առած գունատիպ հրատարակութեանց գրութիւն մը զինկի կամ ալլումինիումի վրայ փոխանակ քարի, ինչպէս էր հին ատեն, պահելով սակայն միշտ վիմատիպ (lithographie) անուանակոչումը: Տպարանի երեք տողաշար մեքենաները (Linotype) նուիրուած են. առաջինը՝ 1938ին Միացեալ Նահանգներու ազգայիններէն, երկրորդը՝ 1958ին Տէր Օննիկ Մանուկեանէն (Թոմոյ) եւ երրորդը՝ նոյն տարին Կիւլպէնկեան Հիմնադրամի Հաստատութենէն: Հայկական եւ եւրոպական գրերու բաժինը շատ ճոխ է, եւ ունի մեծ զանազանութիւն. կէտ մը որ















Տպագրական աշխատանքի զանազան պահեր եւ նմոյշներ գործիքներու։

*անհրաժեշտ է այսօր ո՛րեւէ արդիական տպարանի մը համար: Յետ պատերազմեան շրջանին, Մխիթարեան տպարանը իր կատարած վերջին զարգացումով՝ կը նկատուի մին Վենետիկի լաւագոյն տպարաններէն, կատարեալ իր բովանդակ կազմածով, մանաւանդ* լիթօկրաֆիք *ուղղութեամբ:*

## 9 – ԳԵՐԵԶՄԱՆԱՏՈՒՆԸ

*Ս. Ղազար ունի իր սեփական գերեզմանատունը: Հոն է որ թաղուած են վաստակաւոր Հայրերը իրենց առաքելաջան եւ գրական գործունէութիւններու վախճանին: Հոն է Ալիշանը, հոն են բոլոր միւս արդիւնաւոր Հայրերը: Հոն է բացառիկ արտօնութեամբ մը՝ նաեւ երաժշտագէտ Գուրդէն Մ. Ալէմշահի շիրիմը, նախկին սան Մուրատ-Ռափայէլեան վարժարանին. Բիւզանդ Մարաֆի եւ տիկնոջ, Իսպէնեան ընտանիքի եւ Զրաքեան Յովսէփ Պէյի դամբանները:*

*Մարմարաշէն նկուղներ կ՚ամփոփեն Մխիթարեան Հայրերու մարմինները: Անոնց շինուելէն ետքն է որ նախընթաց շրջանին վախճանեալ միաբաններու ոսկորները հաւաքուեցան միատեղ եւ հիւսուեցան գերեզմանատան պատին մէջ, որուն վրայ Ալիշան գրած է հետեւեալ վերտառութիւնը.*

Ի հայրենեաց նըժդեհք յօժարք յանխուլ կղզիս,
Ի սպաս Փրկչին, Մօրըն Կուսի եւ Հայ Ազգիս,
Ուր միաբան վաստակեցին հանգչին եւ անդ
Հարք եւ եղբարք Մըխիթարեանք յոյս յանվըկանդ,
Յարփիանալ մահահալած կենաց աւուր
Նորադիտակք զուգապարել լուսափետուր:

*Իմաստալից այս տողերով Մեծն Ալիշան կը պատկերացնէ հոգեկան սրտակցութիւնը անոնց՝ որոնք միաբան աշխատեցան եկեղեցւոյ եւ ազգին համար, եւ այժմ միասին կը հանգչին յոյսով երանական լոյսին:*



Գերեզմանատունը՝ դիտուած դուրսէն



Նոճիներու ուղի

# 10 – Ս. ՂԱԶԱՐՈՒ ՎԵՐՋԻՆ ԸՆԴԱՐՁԱԿՈՒՄԸ

*Ս. Ղազարու կղզին այլ եւ այլ շրջաններու մէջ ընդարձակուած է հետզհետէ: Մխիթար Աբբահօր օրով հազիւ մէկ չորրորդն էր այսօրուան Ս. Ղազարը: 1825ին դէպի Վենետիկ նայող կողմէն ընդարձակուած է, իսկ 1949ին՝ վանքին հանդիպակաց Լիտոյի կողմէն եւ ճակատէն դէպի Ջրանցք երկարող մասին վրայ աւելցաւ նոյնքան հող, որքան էր նախընթաց շրջանին տարածութիւնը՝ շնորհիւ Վենետկոյ քաղաքային վարչութեան բարեացակամութեան եւ Միաբանութեան ըրած անխոնջ դիմումներուն: Բ. միջազգային պատերազմէն անմիջապէս ետքը՝ Ս. Ղազարի կղզին ստացաւ, հետեւաբար, 14.000 մեթր քառ. ընդարձակում մը եւ այժմ ունի շուրջ 30.000 մեթր քառ. տարածութիւն: Այս առթիւ շինուեցաւ նոր շըրջապատը, օժանդակութեամբ ազգային բարերարներու ըրած նըպաստներուն: Հողին ընդարձակումով կարելի եղաւ միանգամայն պարտէզին բարեզարդումը, շոճիներու եւ մայրիներու տնկագործութեամբ, վանքին դրան առջեւ բացուած լայն հրա-*



Կղզին՝ վերջին ընդարձակումէն առաջ



Յուշարձան Երնշ. Մխիթար Աբբահօր

պարտէզն ալ նորոգուեցաւ մարմարապատ յատակով: Արեւէն համբուրուած վարդն ու հիրիկ, մեխակն ու գարնանային բազմագոյն ծաղիկներ, ոլէանդրի թուփեր, բոլոր եղանակներուն ծաղկեալ զուարթութիւն մը կու տան այդ հրապարակին: Ս. Ղազար, որ նախ քան վերջին ընդարձակումը եւ բարեզարդումը կը կոչուէր վենետկեան լճակին ակունքը, այսօր կրկնակի կերպով արժանի է այդ տիտղոսին: Եւ ստուգիւ կապոյտ լճակը կենդանացնող բոլոր կղզիներուն մէջ՝ Ս. Ղազար միակն է որ կը հրապուրէ բոլոր այցելուները իր դիրքով եւ իր գեղեցկութեամբ:

Դարաստին մէկ անկիւնը կանգնած է 1962 Օգոստոսէն ի վեր պղնձաձոյլ արձանը Մեծն Մխիթարի, Երանաշնորհ Հիմնադրին ազգանուէր Հաստատութեան մը՝ որ դարերով փարոսը եղած է հայ մտաւորականութեան եւ կը շարունակէ կատարել տակաւին իր անփոխարինելի դերը: Արձանը երկուքուկէս մեդր բարձրութիւն ունի, նոյնքան և աւելի բարձր պատուանդանի մը վրայ հաստատուած է և հայերէն ու իտալերէն վերտառութիւններով ճոխացած, հասկընալի դառնալու համար բոլորին: Արձանին հեղինակն է իտալացի Պաճիոյ քանդակագործը: Մխիթար իր երկու բազուկները երկարած գրկելու շարժուձեւին մէջ՝ կարծես հայրագութ սիրով կոչ կ՚ուղղէ բոլոր հայ ժողովուրդին գալու եւ լսելու իր ձայնը. ձայնը ճշմարտութեան, հաւատքի, ազգասիրութեան, որ այնքան ճշգրիտ եւ անխառն մնացած էին իր հոգւոյն ու մտքին մէջ: Այս է այն տպաւորութիւնը՝ որ մարդ կ՚ունենայ երբ կանգնած այդ արձանին առջեւ՝ կը դիտէ զայն հանդարտ հոգւով, զգալու համար անկէ եկող ներշնչիչ ազդեցութիւնը:



Կղզին՝ վերջին ընդարձակումէն ետք, օդէն դիտուած

## 11. – ՄԽԻԹԱՐԵԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՉԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

*Մխիթարեան դպրոցները անցեալին մէջ եւ ներկայիս՝ եղան, և են այսօր ալ, հայ նոր սերունդին մտաւորական եւ բարոյական-հոգեկան կազմաւորման կեդրոնները:*

*Գրական վերածնունդը ստեղծող Մխիթարեան Հայրերը, շատ հին ժամանակներէ սկսեալ մտահոգուեցան նաեւ ազգին զաւակները կրթելու կարեւոր հարցով: Անհուն զոհողութիւններով աշխատեցան անոնք ոտքի վրայ պահելու վարժարաններ, հակառակ ժամանակներու դժուարութեանց, մինչեւ որ անոնցմէ շատերը քաղաքական ու պատերազմի պատճառներով ստիպուեցան փակուիլ եւ անոնց տեղ ուրիշներ ծնունդ առին: Մխիթարեանները նախընտրեցին գիշերօթիկ վարժարանները, համոզուած՝ որ բարոյական ու տոհմային լուրջ կրթութիւն տալու համար, ատոնք աւելի նպաստաւոր են: Այս վարժարաններու մէջ մտցուցին եւրոպական նման հաստատութիւններու կարգապահական եւ ուսումնական ոգին, համաձայն ժամանակներու պահանջին:*

*Անցեալ շրջանին բացուած Մխիթարեան վարժարանները, որոնք իրենց օգտակար գործունէութեամբ բարիք սփռած են հայ գաղութներու մէջ, հետեւեալներն են.*

1746*ին՝ Եղիսաբեթուպոլսոյ մէջ (Թրանսիլուանիա) կը բացուէր նախակրթարան մը, որուն վրայ աւելցաւ քիչ ժամանակ ետքը՝ նաեւ բարձրագոյն կարգի աշակերտներու բաժինը:*

1749*ին բարձրագոյն նախակրթարան մը Վարատինի մէջ:*

1797*ին նախակրթարան մը եւս Սիբվիզ (Ֆրումոսա):*

1804*ին Կ. Պոլսոյ մէջ «Լուսաւորչեան Եղբայրութիւն» կոչուած դպրոցը:*

1808*ին Ղալաթիոյ եւ Բերայի թաղերուն (Պոլիս) մէջ ուրիշ երկու դպրոցներ:*

1870*ին Քաղկեդոնի մէջ (Պոլիս) միջնակարգ վարժարան մը:*

1817*ին*, 1847*ին եւ* 1886*ին Տրապիզոնի մէջ՝ երեք նախակրթարաններ:*

1825*ին Խարասու Բազարի (Ղրիմ) մէջ բարձր նախակրթարան մը, եւ* 1850*էն ետքը Սիմֆերոպոլի եւ Թէոդոսիոյ մէջ ալ ուրիշ փոքր դպրոցներ:*

1831ին Ախըլցխայի մէջ՝ բարձր նախակրթարան մը։

1883ին Գարտիզակ եւ 1887ին Նիկոմիդիա բացուած նախակրթարաններ։

1884ին նախակրթարան մը Սեւերա (Պարսկաստան)։

1892ին մայր վարժարան մը Մուշի մէջ, եւ յաջորդ տարիներուն՝ Ախինչ, Նորշէն, Օղունք գիւղերու մէջ ուրիշ նախակրթարաններ։

1911ին՝ Մերսին, եւ 1912ին՝ Խարբերդ վարժարաններ։

Մխիթարեանները, ուրեմն, 1746էն մինչեւ 1915 ջանացին ամէն կողմ, ըլլայ գաղութներու եւ ըլլա՛յ Հայրենի գաւառներու մէջ հաստատել կրթարաններ՝ փրկելու համար ազգին զաւակները տոհմային դաստիարակութեամբ։ Անոնք այդ դերը կատարեցին այն ժամանակ՝ երբ ազգին մէջ տակաւին կրթական գործունէութիւնը չէր գտած իր հարկաւոր գիտակցութիւնը։

Յիշեալ նախակրթարանները իրենց ծրագրով կապուած էին մեր Վենետիկի եւ Փարիզի վարժարաններուն հետ, ուր կը ղրկուէին յաջողագոյն հանդիսացող աշակերտները, կատարելագործելու համար իրենց ուսումները եւ ստանալու լիկէօնական կրթութիւն։

Այս բոլոր հաստատութիւնները մեծ մասով՝ 1915ի ահաւոր աղէտին բնաջինջ եղան։ Առաջին միջազգային պատերազմէն ետք եւ անկէ առաջ ալ Մխիթարեան Հայրերը մտահոգուեցան ամփոփելու ազգին որբ զաւակները եւ հիմնեցին որբանոցներ՝ Ռէքանաթի, Ցիէստոյ տ'Արթիքոյ եւ Միլան։

## ՄԽԻԹԱՐԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐԸ
## Ա. ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԷՆ ԵՏՔԸ

Մխիթարեան վարժարաններու մէջ ամէնէն կարեւորն է Վենետիկի Մուրատ-Ռափայէլեան եւ Սեւրի Մուրատեան վարժարանները, որոնք յետ Ա. միջազգային պատերազմին՝ վերստին սկսան իրենց ազգօգուտ գործունէութիւնը։

Մխիթարեան վարժարաններու անդրանիկ մեծ հաստատութիւնն է Վենետիկի Մուրատ-Ռափայէլեանը, — միջնակարգ բարձրագոյն վարժարանը, — ուր ազգին զաւակները կը ստանան տոհ-

մայրն կատարեալ դաստիարակութիւն եւ եւրոպական կրթութիւն։ 1836ին է որ Ռափայէլեան վարժարանը սկսաւ իր գործունէութիւնը Վենետկոյ մեծ ջրանցքին եզերքը կառուցուած հօյակապ պալատին մէջ, եւ որ յետոյ 1850ին փոխադրուեցաւ Ծենոպիոյի նոյնպէս շքեղ պալատը։ Այս վերջինը ունէր առաւելութիւնը մեծ պարտէզով մը օժտուած ըլլալու, անհրաժեշտ պայման մը աշակերտներու առողջ կեանքին եւ մարզական խաղերուն համար։

Ռափայէլեանէն երկու տարի առաջ 1834ին՝ Փատուայի մէջ կը բացուէր Մուրատեան վարժարանը, որ 1845ին փոխադրուեցաւ Փարիզ։ Այսպէս ազգը կ'ունենար երկու մեծ կեդրոններու մէջ՝ զոյգ մը բարձրագոյն լիկէոններ, կազմակերպուած եւրոպական մեթոտով եւ որոնց նպատակն էր հանել հայ ազգին համար բարձրագոյն կրթութեամբ պատրաստուած դէմքեր։

Մուրատեան վարժարանը 1870ին Ֆրանս-բրուսիական պատերազմին պատճառով փակուեցաւ եւ փոխադրուելով Վենետիկ՝ միացաւ Ռափայէլեանին, որ այնուհետեւ կոչուեցաւ Մուրատ-Ռափայէլեան վարժարան։

1928ին Մուրատեան վարժարանը կը վերաբացուէր՝ Սեւրի մէջ, կանանչազարդ դարաստով մը օժտուած՝ տիկին Փոմփատուրի պալատին մէջ, եւ փարիզահայ գաղութին համար կ'ըլլար ամէնէն մեծ ուսումնական եւ կրթական կեդրոնը։ Տարուէ տարի, մինչ աւելի զարգանալով հասցուց սերունդ մը, օգտակար հանդիսանալով Ֆրանսահայ գաղութի ընտանիքներուն հայկական նըկարագրի պահպանման։

Այս զոյգ վարժարաններու բարերարներն եղան հնդկահայ երկու ազնուական հայեր՝ Ռափայէլ Ղարամեան եւ Սամուէլ Մուրատ։

Աղեքսանդրիոյ մէջ 1936ին Քան տը Սեզար Թաղին մէջ կը բացուէր Նախակրթարան մը, որ յետոյ փոխադրուեցաւ Շիւցի Թաղը՝ նոր շէնքի մը մէջ, գնուած Մաթոսեաններու բարերարութեամբ։ Այսօր այդ նախակրթարանը քաղաքական վերահաս պայմաններու հետեւանքով փակուած է դժբախտաբար։

Միաժամանակ, 1936ին կը բացուէր նաեւ Հալէպի մէջ ուրիշ բարձրագոյն վարժարան մը, որ տարուէ տարի կը զարգանայ աշակերտներու բազմութեամբ։

Պոլսոյ մէջ մէկուկէս դար ապրող եւ գործող՝ Բերայի Մխիթարեան վարժարանը, փոխադրուած է այսօր Պոմոնթի (Պոլիս),

աւելի մեծ ու յարմարագոյն շէնքի մը մէջ, ուր կը շարունակէ իր օգտակար գործունէութիւնը Պոլսահայ գաղութին համար:

Պուէնոս Այրէսի մէջ նմանապէս բարձրագոյն կարգի ուրիշ վարժարան մը մտած է իր գործօն շրջանը, ուր հարիւրաւոր հայ մանուկներ ու պատանիներ կը ստանան Մխիթարեան Հայրերու խնամքին տակ տոհմային կրթութիւն՝ տեղական ծրագրին համաձայն կատարելով իրենց ուսումնական ընթացքը: Այդ վարժարանը, հոգածութեամբ ազգային բարերարներու Տիարպէքիրեան եւ Ճօրնէքեան ազնիւ ընտանիքներու՝ կը վայելէ նպաստաւոր պայմաններ ու խոստումնալից ապագայ մը ունի:

Մխիթարեան վարժարաններու եւ անոնց անցեալին մէջ ունեցած հունձքին մասին հրատարակուած է մեր տպարանէն առանձին հատոր մը, ուր կրնան գտնել առաւելագոյն տեղեկութիւններ փափաքողները:

# ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ ԿԱՏԱՐԱԾ ԴԵՐԸ ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԷՋ

*Հայ մշակոյթի պատմութիւնը, յետ անկեալ դարերու ողբալի վիճակին, ԺԸ. դարու սեմին վրայ կը ստանայ մեծ վերելք մը՝ Մխիթար Աբբահօր հիմնած Հաստատութեան կատարած անգնահատելի դերով: Մխիթարեան Միաբանութեան Հիմնադիրը՝ էր միանգամայն հայկական մշակութային վերածնունդին հիմնադիրը, սկսեալ 1701 թուականէն ասդին: Այդ օրերուն՝ հայ տպագրական շարժումը աւելի հաստատուն հիմեր առած ըլլալով՝ հետզհետէ ընդհանրանալու եւ կատարելագործուելու շրջանին մէջ մըտած էր: Մխիթար, նախ Պոլիս եւ յետոյ մանաւանդ Վենետիկ, անխոնջ ջանքեր կը թափէ որ այդ շարժումը կայուն ու բեղնաւոր ընթացք առնէ, նպաստելու համար հայ ազգային ու եկեղեցական գրականութեան զարգացման: Գլուխ գործոց մըն է, արդարեւ, իր «Աստուածաշունչ»ի գեղարուեստական հրատարակութիւնը, որ գերազանցեց իրմէ առաջ եղած բոլոր փորձերը՝ իբր տպագրական արուեստ եւ իբր համեմատական աշխատանք՝ եբրայական բնագրին ու բազմալեզուեան թարգմանութիւններու հետ:*

*Մխիթարի կատարած դերը, որպէս ռահվիրայ մեր մշակոյթի պատմութեան, նկատի առնուած է հոս, այս հատորին սկիզբը: Տեսնենք համառօտիւ, անոր յաջորդներուն բերած անգին ծառայութիւնը* հրատարակչական, աստուածաբանական, հայրախօսական, եկեղեցական, պատմական, հնախօսական, լեզուական եւ գրական *մարզերու մէջ, որով Հիմնադրէն նախագծուած ուղղութիւնները իրագործուեցան, ամբողջացնելով այսպէս ազգի մը վերածնունդին ծրագիրը:*

*Հրատարակչական ասպարէզին վրայ նշանակալից է Հ.* Յովհաննէս Զօհրապեան (1756–1829), *Աստուածաշունչի նոր տպագրութեամբ, որ 1805ին քննական մեթոտով մը լոյս տեսաւ, ունենալով ստորեւ դրուած ծանօթագրութիւններ, արդիւնք համեմատութիւններու եւ որոնք ներկայիս ալ Ս. Գրքի ուսումնասիրութեան եւ բնագրային բաղդատութեան համար ունին իրենց օգտակարութիւնը: Իրմէ ետքը Հ. Ա.* Բագրատունին (1790–1866) *էր որ 1860ին, նախընթացին վրայ բերաւ առաւելութիւններ: Ան, որպէս քաջ յունագէտ ծայրէ ծայր համեմատած է Նախնեաց թարգմա-*

նութիւնը այն յունական բնագրին հետ, ուսկից եղած էր Ե. դարուն՝ հայացումը Աստուածաշունչին: Բոլոր յաջորդ հրատարակութիւնները, որ երեւցան ազգին մէջ, մասնական կամ ամբողջական, կը հիմնուին այս վերջին երկու տպագրութիւններուն վրայ, որոնք այսօր ալ տակաւին կը փնտռուին իբրեւ անթերի հրատարակութիւններ:

Հրատարակչական մարզին մաս կը կազմեն մեր Նախնեաց գործերու տպագրութիւնները՝ փոքրադիր ու մեծադիր չափերով: Այսպէս ծանօթացուեցան մէկը միւսին ետեւէն պատմիչներ, ճառական ու մեկնողական գործեր՝ հայ Ս. Հայրերու կամ եկեղեցական գրիչներու, ինչպէս յոյն ու ասորի Ս. Հայրերէն եղած թարգմանութիւնները. Խորենացի, Ագաթանգեղոս, Փ. Բիւզանդ, Եզնիկ, Եղիշէ, Ղ. Փարպեցի, Յովհան Ոսկեբերան, Եփրեմ, Մանդակունի, Զենոբ Գլակ, Նարեկացի, Ներսէս Շնորհալի, Ներսէս Լամբրոնացի, Գրիգոր Տղայ, Ա. Լաստիվերցի, Մխիթար Գօշ, Մագիստրոս, եւն. եւն.: Մխիթարեանները ունեցան բծախնդրութիւնը բնագրական հաւատարմութեան՝ համաձայն իրենց դարուն քննական ոգիին: Եզնիկի «Եղծ աղանդոց»ը օրինակի համար, լոյս տեսած է 1825ին Հ. Ա. Բագրատունիի խնամքով, որ կը մաքրէր զայն այնպիսի այլատարազ խեղաթիւրումներէ, որոնցմով լի էր 1762ի Զմիւռնիոյ հրատարակութիւնը: Մխիթարեան կարկառուն դէմքեր, հայագէտ ու բանասէր, նուիրուեցան այս մեթոտիկ աշխատանքին, իրենց կողքին ունենալով ուրիշ նուիրեալ միաբաններ, որոնք կ'աջակցէին ընդօրինակութեամբ եւ համեմատութեամբ զանազան օրինակներու: Այս հսկայ աշխատանքը կատարած են մեղուաջան ճիգերով, ըլլան անոնք որ առաջին գծին վրայ կը կենային, եւ ըլլան օժանդակիչ ոյժերը, առանց երբեք իրենց անձնական փառքը խորհելու. այնպէս որ չենք հանդիպիր հրատարակիչներու անուններուն՝ դէթ այս հրատարակչական ասպարէզին սկզբնական շրջանին: Կայ գործը, բայց մշակները ծածկուած են խոնարհ լռութեան քօղով:

Գրեթէ միաժամանակ տեղի ունեցած են երկու կարեւոր ձեռնարկներ, պատմական–հնախօսական եւ լեզուական ուղղութիւններով: Վերածնունդի յայտագրին գլխաւոր նպատակը կը ձգտէր ազգային ոգիին վերազարթումին, բուժելու համար դարաւոր ստրկութեան տուած վէրքերը եւ դրոշմելու խոր գիտակցութիւն մը՝ թէ մենք ալ ազգ մը եղած ենք, թէ մենք ալ փառաւոր անցեալ մը

ունեցած ենք։ Չամչեան ուզեց շեշտել զայն իր եռահատոր պատմական կոթողով, իսկ անոր քեռորդին Հ. Ղ. Ինճիճեան՝ ազգային հնախօսութեան ու աշխարհագրութեան գիծով։ Անոնց գործերը, այսօր ալ, երբ քննական ուսումները առաջացած են զարգացում եւ կատարուած մասնական ուսումնասիրութիւններ պատմական որոշ դէմքերու եւ շրջաններու վրայ, կը մնան միշտ իբրեւ հիմնական աղբիւրներ։

Լեզուական վերազարթումը, նպատակ ունէր Նախնեաց ոսկեղինիկ լեզուն մաքրելու յաջորդ դարերուն խեղաթիւրումներէն։ Մխիթար Աբբահայր յանձնարարած էր իր յաջորդներուն՝ որ երբ ժամանակները հասնին (վասնզի իր օրով տակաւին լատինաբան դպրոցին հետեւողները շատ ուժեղ ազդեցութիւն ունէին, նոյնիսկ ազգային-եկեղեցական գործերու մէջ), անոնց առաջին մեծ մտահոգութիւնը ըլլայ՝ հսկել գրաբարի մաքրութեան վրայ, ջանալով տալ անոր նախկին գեղեցկութիւնը եւ փայլը։ Այս ուղղութեամբ ինք յօրինած էր արդէն Քերականութիւն մը, ու մանաւանդ Հայկազեան լեզուի բառարանը, օժանդակութեամբ իր ձեռնհաս աշակերտներուն, մասնաւորապէս Հ. Մկրտիչ Անանեանի (1715–1777)։ Սա յետ Հիմնադրին մահուան, լրացուց գործը, հսկելով ամբողջական հրատարակութեան վրայ։ Այս Բառարանին երկրորդ մասը, այսինքն Յատուկ անուանց բաժինը, իսկապէս նորութիւն մըն էր, եւ որ ցարդ իբրեւ ընդհանուր անուանական Բառարան միակն է։ Շատ ուշ շրջանին է որ Մխիթարեան գրական դպրոցէն դուրս, Հրաչեայ Աճառեան տուաւ կատարեալ ու ամբողջական «Հայ անձնանունների» բառարանը, որուն մէջ դուրս կը մնան սակայն տեղանունները։ Մխիթարի ձեռնարկը ցոյց կու տայ, թէ ի՛նչքան մեծ եղած է իր գաղափարը՝ ամփոփելու հայ յատուկ անունները, անձի կամ տեղւոյ, ըլլա՛յ աստուածաշնչական եւ ըլլա՛յ ազգային մատենագիրներէ քաղուածները։ Յետոյ աւելցուած է աշխարհաբարէ գրաբար բառեր՝ առանձին բաժինով, ընդարձակ ու մանրամասն։

Շուրջ դար մը ետքը, Մխիթարի յաջորդ աշակերտներէն՝ Հ. Գաբրիէլ Աւետիքեան, Հ. Խաչատուր Սիւրմէլեան եւ Հ. Մկրտիչ Աւգերեան, ձեռք զարկած են ճոխագոյն եւ գիտականօրէն աւելի կատարեալ Բառարանի մը յօրինման, կոչուած «Բառարան Երից վարդապետաց» և կամ «Նոր Բառարան Հայկազեան լեզուի»։ Հրատարակուած է 1836–1837ին։ Երկար տարիներու գործ մը, որուն

բովանդակ պատասխանատուութիւնը ծանրացած է խումբին ամէնէն երիտասարդին վրայ, Հ. Աւգերեանին, որ քանի մը անգամ վերամշակած ու ամփոփելով վերածած է երկու հատորի այդ աշխատանքը, որ ըստ Աճառեանի ամէնէն կատարեալ բառարանն է հայ լեզուի, ուր քննական ճշգրտութեամբ կը տրուին վկայութիւններ Նախնեաց գործերէն, ի հաստատութիւն նոյն բառին այլազան իմաստներուն:

Նոյն շրջանին, ուրիշ դէմք մը, Հ. Մանուէլ Ջախջախեան, հրատարակած է իր Հայ-Իտալ եւ Իտալ-Հայ հսկայ բառարանները, նոյնքան ակադեմական գործ մը:

Հայ լեզուի զարգացման նպաստող գործեր էին Քերականութիւններու շարքը: Մխիթար Աբբահօրմէն ետքը Հ. Մ. Չամչեան՝ իրագործած է Հիմնադրին կտակը, տալու հայերէնին իր նախկին ուղղախօսութեան եւ գրելարուեստին հարազատ նկարագիրը, մաքրելով զայն լատինաբան դպրոցի աղաւաղումներէն, որոնցմէ ձերբազատուելու ատենը հասած էր այլեւս: Չամչեանէն ետքը, քայլ մը եւս առաջ կ'երթայ ձեռնարկը Հ. Գ. Աւետիքեանով, որուն Քերականութիւնը կը ստանար ձեւաբանական կատարելութիւն, օրէնքներու ճշտութիւն: Զինքն ալ գերազանցած է Հ. Ա. Բագրատունի, որուն «Ի պէտս զարգացելոց»ը՝ կատարն է հայերէն լեզուի եւ շտեմարան մը քերականական բոլոր օրէնքներուն, բոլոր ձեւերուն եւ բոլոր զարտուղութիւններուն: Խօսքի մասերուն դասաւորումը կ'առնէ իրմով իր վերջնական կանոնաւոր ներկայացումը նկատմամբ ձեւաբանութեան եւ շարադասութեան, ինչպէս նաեւ ուղղագրութեան, բարդութեան եւ ածանցումի օրէնքներուն: Հոն պէտք է դիմէ ամէն հայ լեզուաբան, գտնելու համար լուծումը իր դժուարութիւններուն, հայերէնի անսովոր ու բարդ վիճակներուն եւ ճանչնալու հիմնական սկզբունքները:

Լեզուական հարցի վրայ խօսած ատեն հարկ է յիշել նաեւ աշխարհաբարի վերերեւումը, որպէս ժողովրդական բարբառ: Մխիթար այդ բանի վրայ ալ խորհած է, գրելով իր աշխարհաբարի Քերականութիւնը, զոր յետոյ իր յաջորդները աւելի զարգացուցին: Հ. Մկրտիչ Անանեանն է դարձեալ որ ժողովրդականացուց գործածութիւնը, ջանալով դրական հանգամանք տալ անոր: Հ. Ղ. Ինճիճեան իր Տարեգրութիւնքով (1799–1802), Եղանակ Բիւզանդեանով (1803–1820) սկսաւ գործնականին մէջ մշակել զայն եւ ընտանեցնել ժողովուրդին: Բայց գլխաւորապէս Բազմավէպն է, որ

1843ին սկսելով իր առաջին թիւը՝ ուրիշ նպատակ չունէր, բայց եթէ հայ ժողովուրդին մօտենալ, սիրցնել ու սորվեցնել աշխարհաբարին ընտիր, դիւրասահ ու մաքուր գործածութիւնը: Կը բաւէ բանալ «Բազմավէպ»ի առաջին թիւերը, համոզուելու համար թէ ինչքան ուղիղ, քերականօրէն ճիշտ ձեւաբանութեամբ եւ շարադասութեամբ հայերէն մըն էր գործածուածը այդ ժամանակներուն, երբ տակաւին գրաբարի ուժեղ տիրապետութիւնը արգելք կը հանդիսանար կարգ մը գրողներու կողմէն, Մխիթարեան դըպրոցէն դուրս: Անոր օրինակին վրայ է որ ազգային ուրիշ թերթեր, սկսան աշխարհաբարի գործածութիւնը ու այսպէս հարթըւեցաւ ճամբան դէպի ժողովրդականութիւնը՝ գիտութիւններու եւ գրականութեան:

Ժողովրդական այս շարժումը աւելի եւս զօրացնելու համար, Մխիթարեանները ձեռք զարկին թատրոնի ալ, համարելով զայն՝ ազգային ինքնագիտակցութիւնը արթնցնող օգտակար ազդակ մը: Թէեւ սկիզբը գրաբար լեզուով էր, բայց չուշացաւ վերածուելու աշխարհաբարի: Հ. Պետրոս Մինասեան գնահատելի դէմք մըն է այս մարզին մէջ: Վենետիկէն է, ուրեմն, որ կը մեկնի ԺԸ. դարուն, թատերական շարժումն ալ, եւ կը սկսի ընդհանրանալ ԺԹ. դարուն Մխիթարեանց աշակերտներով, ելած Վենետկոյ Ռափայէլեան եւ Փարիզի Մուրատեան վարժարաններէն: Մկ. Պէշիկթաշլեան, Ս. Հէքիմեան, Թ. Թերզեան, Սրապիոն Թղլեան, Մարկոս Աղաբէգեան, պարզապէս յիշատակելու համար քանի մը անուններ, որոնք ծաւալեցին շարժումը հայ գաղութներու մէջ՝ Պոլսէն Կովկաս: Եւ այնուհետեւ ազգը սիրեց թատրոնը, զարգացուց ու տուաւ իր ծոցէն դերասաններ ու դերասանուհիներ, եւ թատերգակ գրողներ. բայց այդ վերջնական զարգացումին ու յեղաշրջումին հիմնական պատճառը կը պարտինք Մխիթարեաններուն:

Ուրիշ ասպարէզ մը, որ դարձեալ Վերածնունդի ոգիէն կը բխէր եւ անոր ծրագրին մէկ մասը կը կազմէր, է Գիտութիւններու աւանդումը, որմէ այնքան զուրկ էր մեր ժողովուրդը այդ ժամանակներուն: Թուաբանական կամ ուսողական, բնական եւ բնաբանական, տարրաբանական, հանքաբանական, երկրաբանական, աստղաբաշխական գիտութիւնները, առաջին անգամ Մխիթարեաններէն աւանդուեցան, անոնք պատրաստեցին առաջին դասագրքերը, որոնց հետեւելով է որ ազգն ալ, ուրիշ վաստակաւոր դէմքերով,

*հետզհետէ ընդհանրացուց ու տարածեց։ Այս գծին վրայ բազմաթիւ են անունները Մխիթարեան Հայրերուն, ինչպէս Հ.* Սահակ Պարոնեան (1749–1806), Հ. Խ. Սիւրմէլեան (1751–1827), Հ. Իգնատիոս Փափազեան (1764–1852), Հ. Ղուկաս Ուլլուխեան (1742–1830), Հ. Հմայեակ Պապիկեան (1827–1880), Հ. Մեսրոպ Սահակեան (1852 – 1918)։ *Մեծագոյն դէմքը, սակայն, եղաւ Հ.* Մանուէլ Քաջունի, *որ բացի զանազան գիտութիւններու դասագրքերէն՝ հրատարակեց* Արուեստից եւ Գիտութեանց *երկհատոր Բառարան մը, որ ԺԹ. դարու գիտական հանդրուանը կը կազմէ մեր մէջ, նոյնիսկ այսօր պահելով իր անկորնչելի արժէքը բառաքննական տեսակէտով, հակառակ գիտութիւններու հսկայական յառաջդիմութեան։*

*Հայ ազգը գիտցաւ, արդարեւ, գնահատել Մխիթարեաններու կատարած դերը։ Ազգայիններու հետ՝ նաեւ արեւմտեան աշխարհի գիտնականները հիացան միշտ ի տես կատարուած հոյակապ աշխատանքներուն, որոնցմով հայ լեզուն, պատմութիւնը ու գրականութիւնը, հայրախօսութիւնը եւ եկեղեցական մատեաններու ուսումնասիրութիւնը եւ հայ եկեղեցւոյ վարդապետութիւնն ու աստուածաբանութիւնը աւանդուած էր, եւրոպական զարգացման մակարդակով։ Լեզուագէտներ ու հայագէտներ կը մրցէին Ս. Ղազարի անունը պանծացնելու, եւ մանաւանդ հոն կը դիմէին հայերէնի ուսման համար։*

*Այս մեծ վարկն էր որ կասեցուց* 1810*ին նաեւ Մեծն Նափոլէոնը իր կործանարար ձեռնարկին մէջ։ Մինչ Եւրոպայի բոլոր կրօնական Միաբանութիւնները մէկ հարուածով կը բնաջնջուէին՝ Գերպ. Ստեփանոս Ագոնց, արքեպիսկոպոս Աբբահայրը, որուն համբաւը իբրեւ գիտնական եկեղեցականի՝ տարածուած էր արդէն Եւրոպայի արքունիքներուն եւ մեծ ոստաններուն մէջ, ներկայացուց Մխիթարեան Միաբանութեան գործունէութիւնը՝ իբր* Ակադեմական Հաստատութիւն (Académie), *եւ Նափոլէոն ճանչնալով այս բացառիկ երեւոյթը, կայսերական հրամանագրով մը անհըպելի հռչակեց Ս. Ղազարի մենաստանը՝ հաստատելով զայն անփոփոխելի կերպով իր կազմակերպչական կազմին ու սարքին մէջ։ Եւ այնուհետեւ բոլոր պաշտօնական թուղթերու եւ գիտական յարաբերութիւններու մէջ՝ Մխիթարեան Միաբանութիւնը կը կոչուէր միանգամայն մերթ* Համալսարանական Հաստատութիւն *եւ մերթ* Գիտական Ճեմարան Հայկական Ուսմանց։

Եւրոպական աշխարհի հայագէտները իրենց փառք ու պատիւ կը համարէին անդամ հռչակուիլ Հայկական ճեմարանին։ Օտարազգի անդամներէն կը յիշենք հետեւեալները. 1828ին՝ Ֆրիտրիխ Նէոյման (Ուսուցչ. Միւնիխէնի համալսարանին, 1834ին՝ Լը Վայեան տը Ֆլորիվալ (Ուսուցչ. Փարիզի Արեւելեան լեզուաց վարժարանին), 1835ին՝ Ժօժէն Պոռէ (ֆրանսացի գիտնական), 1840ին՝ Ճիւզէփփէ Քափփէլլէթթի (իտալացի գրագէտ), 1846ին՝ Հայնրիխ Փեթերման (Ուսուցչ. Պերլինի համալսարանին), 1853ին՝ Եդ. Տիւլորիէ (Ուսուցչ. Փարիզի Արեւել. լեզուաց վարժարանին), 1861ին՝ Վիկտոր Լանկլուա (ֆրանսացի հայագէտ եւ դրամագէտ), 1864ին՝ Ֆելիքս Նեւ (Ուսուցչ. Լուվէնի համալսարանին), 1865ին՝ Էվարիստ Փրիւտոմ (ֆրանսացի լեզուագէտ), 1897ին՝ Հայնրիխ Գելզէր (Ուսուցչ. Ենայի համալսարանին), 1902ին՝ Ֆրէտ. Կոնիբիր (Ուսուցչ. Օքսֆորտի համալսարանին), եւ Էմիլիոյ Թեզա (իտալացի լեզուագէտ), 1903ին՝ Հայնրիխ Հիւբշման (Ուսուցչ. Ստրասպուրկի համալսարանին), ինչպէս նաեւ Փ. Վեթթէր (Ուսուցչ. Թիւպինկէնի համալսարանին), եւ Նիքոլա Մառ (վրացի գիտնական), 1905ին՝ Եօզէֆ Քարսթ (Ուսուցչ. Ստրասպուրկի համալսարանին), 1905ին՝ Ա. Մէյէ (ֆրանսացի լեզուագէտ), 1929ին՝ Նիքոլա Եորկա (ռումէն պատմագէտ), 1937ին՝ Ֆրէտ. Ֆէյտի (Ուսուցչ. Փարիզի Արեւել. կենդանի լեզուաց վարժարանին), 1943ին՝ Ալմոյ Ծանոլլի (իտալացի լեզուագէտ), եւ ուրիշներ։

Մեր ազգայիններէն Հայկական ճեմարանին անդամ եղած են. 1817ին՝ Յակոբ Շահան Ջրպետ (Ուսուցչ. Փարիզի Արեւել. լեզուաց վարժարանին), 1902ին՝ Գրիգոր Խալաթեանց (Ուսուցչ. Լազարեան ճեմարանին), 1929ին՝ Զատիկ Խանզատեան (աշխարհագէտ ու քարտիսագիր), եւ Ստեփան Կուրտիկեան (լեզուագէտ), 1930ին՝ Գրիգոր Սինապեան (փաստաբան եւ երկրագործական Նախարար Թուրքիոյ)։

Պատուոյ անդամներ եղան Ֆրանսայի ճեմարանին նշանաւոր դէմքերէն՝ Շարլը Տիլ բիւզանդագէտը՝ 1931ին, Ժորժ Կոյիոյ՝ 1932ին, Հանրի Պորտոյ՝ 1935ին, Մաքսիմ Վէյկան՝ 1937ին եւ պետական անձնաւորութիւններէն՝ Լուի Մարէն՝ 1934ին, Ժիւսթէն Կոտար՝ 1935ին, եւ ազգայիններէն՝ Ն. Վ. Ծիրանաւոր Գրիգոր-Պետրոս Աղաճանեան՝ 1946ին։

Երբ Մխիթարեաններու դրականութեան մասին կը խօսուի,

ազգայիններ ու օտարներ կը համեմատեն միշտ անոնց բերած ծառայութիւնը՝ Ե. դարուն Ս. Սահակի, Ս. Մեսրոպի եւ Թարգմանիչ հոյլին ստեղծած շարժումին հետ: Պահելով անշուշտ համեմատութիւնները, ժամանակներու զանազանութիւնը, այս մերձեցումը ունի իր հիմը իրականութեան մէջ: Մխիթարեանները արեւմտեան ճաշակն ու նրբութիւնը, արուեստն ու քաղաքակրթութիւնը եւ գիտութիւնները ծաւալեցին հայերու մէջ. Արշակ Չօպանեան կ՚ըսէ՝ թէ ամբողջ արեւմուտքը բացին հայուն առջեւ: Եւ ստուգիւ, աւելի դար մը եւ աւելի առաջ, յոյն ու լատին դասականներու թարգմանութեամբ, Եղիա Թովմաճեան, Հ. Մ. Ջախջախեան, Հ. Մ. Աւգերեան, Հ. Ց. Աւգերեան, Հ. Ա. Բագրատունի, Հիւրմիւզեան եղբայրները, Հ. Ա. Սուքրի եւն., մտցուցին ազգին մէջ գեղեցիկ գրականութեան ճաշակը, տալով մեզի դասական հայերէնով Հոմերոսը, Վիրգիլիոսը, Սոփոկլէսը, Դեմոսթէնէսը, Կիկերոնը, Ովիդիոսը, Տակիտոսը, Ռասինը, Գոռնէյլը, Թասսոյ, Ալֆիէրի, եւն., եւ արդի ժամանակներուս մէջ՝ նոյնը ըրաւ աշխարհաբար հայերէնով՝ Հ. Արսէն Ղազիկեան:

Մխիթարեաններու կատարած դերը տակաւին հոս չի վերջանար: Անոնք ոչ միայն հայուն ծանօթացուցին ինչ որ արեւմտեան գրականութիւններու մէջ կար գեղեցիկ ու հոյակապ, այլ Եւրոպայի գիտնականներուն, բանասէրներուն ծանօթացուցին հայրախօսական գանձերը՝ որոնք մեր հայերէն թարգմանութեան մէջ պահուած էին. Եւսեբիոսի Քրոնիկոնը, Փիլոն Եբրայեցիի Ճառերը, Ոսկեբերանի եւ Եփրեմի անծանօթ էջերը, Սեբերիանոսի Ճառերը, Արիստիդէսի Ջատագովութիւնը լատիներէն թարգմանութեամբ, ինչպէս նաեւ կարգ մը մեր Ս. Հայրերէ, օր. Յովհ. Օձնեցիի, Ս. Ներսէս Շնորհալիի գործերը եւն...: Այսպէս կը ձգուէր կամուրջ մը ընդմէջ արեւմուտքի եւ արեւելքի:

Անցնինք նկատելու համառօտիւ Մխիթարեան Միաբանութեան կարգ մը կարկառուն դէմքերը:

---

## Հ. ՎՐԹԱՆԷՍ ԱՍԿԵՐԵԱՆ (1720–1810)



Հ. ՎՐԹԱՆԷՍ ԱՍԿԵՐԵԱՆ

*Իր գրչին տակ է որ սկսաւ գրաբարը առաջին անգամ վճիտ ընթացք մը առնել, մաքրուած լատինաբան դըպրոցի խառնուրդէն եւ այլատարազ նկարագրէն: Ծընած է Պոլիս 15 Մարտ 1720ին: Եղած է ձեռնասուն աշակերտը Մեծն Մխիթարի. քահանայութեան ձեռնադրութիւնը ստացած է 9 Մարտ 1743ին, եւ վախճանած՝ Սուրբ Ղազար 12 Յունուար 1810ին:*

*Մխիթար Աբբահօր փափաքին վրայ, եօթը տարի աշխատած է համեմատելու Հայ Աստուածաշունչը լատին Թարգմանութեան հետ: Այս տքնաջան աշխատանքին արդիւնքը օգտագործուած է Հիմնադրին Աստուածաշունչի հրատարակութեան համար: Այս առթիւ պատրաստած է նաեւ Ս. Գրքի Լատիներէն–Հայերէն բառարան մը, որ մնացած է անտիպ: Երկրորդ համեմատական աշխատանք մը կատարած է Հայ եկեղեցական մատեաններու զանազան ձեռագիրներուն, պատրաստելու համար անոնց տպագրութիւնը: Այսպէս 1782ին լոյս տեսած է* Տօնացոյցը՝ *հայկական տումարին մշտնջենաւոր աղիւսակներով միասին: Նոյնը ըրած է յետոյ* Մաշտոցին *համար, որ տպուած է 1831ին: Ձեռք զարկած է միաժամանակ լատիներէնի վերածելու մեր եկեղեցական մատեանները եւ Հայ Ս. Հայրերու գործերը, որոնք տասը հատոր կը կազմեն, նմանապէս մնացած անտիպ:*

*Տիրացած այլեւս գրաբարի մաքուր ու գեղեցիկ շարադասութեան ըստ Նախնեաց ընիկ լեզուին՝ սկսած է իր Թարգմանութիւնները, որոնցմէ առաջինն է Թովմաս Գեմբացիի* Յաղագս նմա-

նող լինելոյ Քրիստոսի (1737) *ոսկեղինիկ գիրքը, որուն լեզուին, ըստ աւանդութեան, Բագրատունին շատ կը հաւնէր․ ունեցած է իր կենդանութեան ուրիշ տպագրութիւն մ'ալ 1793ին: Յաջորդ թարգմանութիւնը եղաւ Անտոն Կոլգնի* Փիլիսոփայութիւնը (1750), 4 *հատոր՝ պարզ, դիւրահաս ու վճիտ հայերէնով, որ բոլորովին կը զատուի լատինաբան դպրոցի թարգմանութենէն:* Խոկմունք քրիստոնէականք (1771), Խրատք կրօնաւորական կատարելութեան (1779), Քարոզգիրք եօթնկարգեան (1781), *Թեաւրոսի* Իմաստասիրութիւն բարոյական (1793): *Վերջին թարգմանութիւնն է* Պատմութիւն հռովմէական, *գործ Ֆրանսացի Ռոլէն պատմագրին, հայացուած խտալերէն թարգմանութեան մը վրայէն,* 6 *մեծադիր հատորներու մէջ, զոր յետոյ ֆրանսերէն բնագրին հետ համեմատած է Հ. Մ. Ջախջախեան եւ տպագրուած* 1816–17*ին:*

*Հ. Վրթանէս Ասկերեանի արժէքը կը կայանայ անոր մէջ, որ եղաւ առաջինը՝ Նախնեաց լեզուն մաքրագործելու այն շարժիչ ոյժին, որուն լծուած էին Մխիթարեանները, տալու համար վճիտ եւ ընտիր գրաբար մը: Կարելի է, հետեւաբար, նկատել զինքը առաջապահը Մխիթարեան դասական դպրոցին: Համբաւը տարածուեցաւ Հնդկաստանի ու Պարսկաստանի ազգային գաղութներուն մէջ: Իր հմտութեան ու կատարած մեծ դերին համար կոչուեցաւ «Մեծագլուխ Վրթանէս վարդապետ»:*

---

## Հ. ՄԻՔԱՅԷԼ ՉԱՄՉԵԱՆ (1738–1823)



Հ. ՄԻՔԱՅԷԼ ՉԱՄՉԵԱՆ

Չամչեան, կոչուած նոր ժամանակներու «Հայոց պատմահայրը», մեծ միտք մըն է, խորաթափանց աստուածաբան եւ մեկնիչ: Իր անունը կապուած է Պատմութեան հատորներուն՝ որ ԺԸ. դարու ամէնէն ուշագրաւ գործը եղաւ: Ծնած է Պոլիս 4 Դեկտ. 1738ին: Մտած է Ս. Ղազարի վանքը տասնեւինը տարեկանին՝ թողլով իր նշանածը, աղջիկը Տիւզեան Միքայէլ ագային, որուն քով ան ոսկերչութիւն կ'ընէր: Իր երէց եղբայրը՝ Հ. Յակոբոս Չամչեան, հրատարակիչ «Օրացոյց»ներու եւ «Գուշակ օդոց»ներու (սկսելով 1757-1777, յետոյ շարունակուած ուրիշներէ), արդէն մեծն Մխիթարի աշակերտած էր եւ ձեռնադրուած 1747ին, Հիմնադրին մահէն երկու տարի առաջ:

Չամչեան օժտուած ուսումնական զօրաւոր կարողութեամբ, կարճ ժամանակի մէջ յաջողեցաւ տիրանալ լեզուներու, գիտութեանց եւ աստուածաբանական ընթացքն աւարտելով ստացաւ քահանայական ձեռնադրութիւնը՝ 6 Մարտ, 1762ին: Եօթը տարի ետքը՝ երբ քարոզիչ ղրկուեցաւ Պասրա, ուր իր առաքելաջան գործունէութեամբ օգտակար հանդիսացաւ ազգայիններուն, դիւցազնական առաքինութեամբ մը փայլելով 1773ի ժանտախտին ատեն:

Թէեւ ուսումնական կեանք մը ապրած է իր առաքելավայրերուն մէջ ալ, յօրինելով Յակոբ Նալեան պատրիարքի գրուածքներուն դէմ քննական ու ջատագովական չորս հատորներ (մնացած անտիպ), սակայն 1775ին է որ կոչուելով վանք, նուիրուեցաւ մեծ

թափով իր գրաւորական աշխատանքներուն: Տարի մը ետքը յանձնուեցաւ իրեն վանքին աշակերտներուն տեսչութիւնը: Այս տարիներուն է որ ձեռնարկեց իր Հայոց Պատմութեան կոթողային գործին, երեք հատորներու մէջ (1784–1786): Հսկայական համադրութիւն մըն է այս աշխատութիւնը, հիմնուած իր օրով ծանօթ հայ պատմագիրներու տուեալներուն վրայ, որոնց մէջ եղած մերթ հակասութիւնները, մերթ անճշտութիւններն ու մանաւանդ պակասները նկատմամբ անուններու և թուականներու, ստիպած են զինքը դիմելու յունական, հռոմէական, արաբական օտար աղբիւրներու՝ կատարելու համար անհրաժեշտ ստուգութիւններ: Հայ պատմիչներէն զատ օգտագործած է նաև Յայսմաւուրքներ, Ճառընտիրներ, Յիշատակարաններ: Այս վիթխարի գործին մէջ կը տեսնուի իր օրերուն քննական ոգին՝ համաձայնեցնելու պատմիչները եւ լուծելու պատմական եւ ժամանակագրական դժուարութիւնները: Թէեւ աւանդական պատմութեան ընդհանուր գիծերը կը պահպանէ, եւ ազգային–հայրենասիրական շեշտը շատ զօրաւոր է, սակայն չի շեղիր իր նպատակէն, տալու՝ կարելի ստուգարանութիւններով, Հայոց լիակատար պատմութիւնը, սկիզբէն մինչեւ իր օրերը, ընդարձակ եւ ամբողջական, քննութեան բովէն անցնելով մեր բոլոր պատմիչներու աւանդածները: Եւ որովհետեւ կը գրէր այնպիսի ժամանակի մը մէջ, երբ Հայ ժողովուրդը երկար դարերով ստրկութեան լուծին տակ մնացած ըլլալուն՝ կորսնցուցած էր իր ազգային ոգին, Չամչեան ջանաց ներշնչել արիութիւն եւ դիւցազնական շունչ, ցնցելով ինկած հոգերանութիւնները եւ մղելով դէպի հայրենասիրական գիտակցութիւն:

Պատմութեան հետ զուգընթաց նուիրուած է Հայկազեան լեզուի Քերականութեան, իբր գործադրութիւն Մխիթար Աբբահօրմէ թողուած աւանդի մը: Լոյս տեսած է 1779ին, եւ ունեցած յաջորդական տպագրութիւններ եւ համառօտութիւններ:

Այս շրջանին ձեռք զարկած է նաեւ Սաղմոսներու մեկնութեան, իբր պարտադրութիւն հրամայուած իրեն՝ Ստեփանոս Մելքոնեան Աբբայէն: Սակայն հարկը կը ստիպէր որ վերադառնար արեւելք, եւ այս անգամ Պոլիս՝ 1798էն ետքը, ուր շարունակեց իր աշխատանքը: Բայց նախ քան Սաղմոսաց մեկնութեան գործին հրատարակութիւնը՝ տուաւ կարգ մը երկրորդական գործեր, այսպէս Նուագարան օրհնութեան (1801), հատոր մը՝ որ կ՛ամփոփէ Սաղմոսներու եւ Աստուածաշունչի զանազան տեղերուն մէջ եղած

գովաբանական օրհնութիւնները՝ համեմատելով զանոնք Շարականի Աւագ օրհնութեանց հետ, եւ կատարելով բնագրական բաղդատութիւն մը եօթանասնից եւ ուրիշ ազգերու թարգմանութիւններուն հետ։ Աղօթական պարունակութիւն ունի ուրիշ փոքր գործ մը՝ Հրահանգ եօթնեկի (1802), մինչդեռ ճառական պարունակութիւն՝ Պատկեր տօնից Ս. Աստուածածնի (1805), իսկ Սեղան խնկոցը (1816) կը բովանդակէ տէրունական տօներու եւ ծիսական տարւոյն վրայ հոգեւոր մտածութիւններ։

Բայց իր երկրորդ հսկայական գործը՝ Մեկնութիւն Սաղմոսացը, կ'ուշանար հրատարակուելու, արդիւնք երկար տարիներու ուսումնասիրութեան, որովհետեւ տակաւին ունէր ճշտելիք կարգ մը լեզուական հարցեր եբրայական բնագրին եւ թարգմանութիւններու համեմատութեանց համար։ Պոլսոյ մէջ կրցաւ լրացնել այդ պակասն ալ։ Գործը կը բաղկանայ տասը հատորներէ. առաջինը եւ վերջինը հրատարակուեցան 1823ին, մինչ միւսները 1815–1821 տարիներու ընթացքին։

Զամչեանի համբաւը իբր պատմահայր եւ աստուածաբան՝ մեծ եղած է ազգին մէջ, Պոլիս եւ գաւառները։ Իր ջանքով է որ կրօնական միութեան գաղափարը զօրացած էր եւ մօտ էր իրականութիւն դառնալու, բայց ընդդիմադիրներու հոսանքը խափանեց ամէն ձեռնարկ։ Վախճանեցաւ Պոլիս, 30 Նոյեմբեր 1823ին՝ ութսունեւվեց տարեկան հասակին մէջ։

---

## Հ. ԳԱԲՐԻԷԼ ԱՒԵՏԻՔԵԱՆ (1751–1827)



Հ. ԳԱԲՐԻԷԼ ԱՒԵՏԻՔԵԱՆ

Ծնած է Կ. Պոլիս, Ս. Ղազարի վանքը մտած է 1764ին եւ քահանայական ձեռնադրութիւնը առած՝ 1773ին: Իր կեանքը գրեթէ ամբողջապէս անցած է Ս. Ղազար, նուիրուած իր գրական աշխատանքներուն, եւ միանգամայն ստանձնելով փափուկ պաշտօններ՝ Միաբանութեան վարչական կազմին մէջ: Ընտրուած է 1779ին Աթոռակալ՝ Մելքոնեան աբբային, որուն մահէն ետքը, իբր տեղապահ կառավարած է Միաբանութիւնը, մինչեւ յաջորդ Աբբային ընտրութիւնը: 9 Հոկտ. 1800ին, Ստեփանոս Ագոնց աբբահօր ընտրութեան ատեն, կը վերահաստատուի իր Աթոռակալի պաշտօնին վրայ, եւ յաջորդ ընդհանուր ժողովներուն մէջ ալ կը վերընտրուի միշտ մինչեւ 1824: Երբ Ագոնց աբբահօր կը յաջորդէ Սուքիա Սոմալ, իր յառաջացած տարիքին եւ առողջական պատճառով կը հրաժարի այլեւս վարչական պաշտօններէ:

Հ. Գ. Աւետիքեան որպէս սրբակեաց կրօնաւոր եւ իբրեւ աստուածաբան ու մտաւորական՝ ունեցած է մեծ ազդեցութիւն գրական սերունդի մը պատրաստութեան մէջ: Երկար ատեն դասախօսած է աստուածաբանութիւն, փիլիսոփայութիւն եւ ճարտասանութիւն վանքի բարձրագոյն աշակերտներուն:

Իր գործերը մեծ մասով մեկնողական են. ունի նաեւ քերականական եւ քերթողական արտադրութիւններ: Մեկնողական են Նարեկ աղօթից, կամ Նարեկլուծ, հրատարակուած 1801ին, ուր ան կու տայ, մանրամասն վերլուծական ոճով, ճշգրիտ բա-

*ցատրութիւնը Գրիգոր Նարեկացիի Աղօթամատեանին: Նոյնին կրկին տպագրութիւն մը կատարուած է 1827ին եւ միեւնոյն տարին նաեւ Ճառերուն եւ միւս գործերուն մեկնութիւնը՝* Երկրորդ մատեան ճառից *խորագրով:*

*Մեկնողական իր հսկայ գործն է, սակայն, Պօղոս առաքեալի ԺԴ թուղթերու մեկնաբանութիւնը, ուր կը յայտնուի խոր թափանցող մը աստուածաբանական հարցերուն եւ Պօղոսի խրթին ու դժուարին գաղափարներուն մէջ: Նկատելի է հոս նաեւ իր մեծ հմտութիւնը՝ ըլլա՛յ հայրախօսական հարցերուն, ըլլա՛յ ուրիշ մեկնիչներու տեսութիւններուն, հարուստ վկայութիւններով փաստարկուած: Գործը հրատարակուած է երեք հատորներով. առաջինը լոյս տեսած է 1806ին, երկրորդը՝ 1811ին և երրորդը՝ 1812ին:*

*Երրորդ մեկնողական կարեւոր գործն է* Բացատրութիւն շարականաց (1814), *ուր կը քննէ շարականներու հեղինակները, կու տայ պայծառ մեկնութիւն անոնց մէջ յայտնուած գաղափարներուն, պատկերներուն եւ մութ կէտերուն, դուրս ցայտեցնելով անոնց գրական գեղեցկութիւնը եւ տալով լուսաբանութիւններ կրօնական վիճուած հարցերուն շուրջ:*

*Զամչեանէն ետքը ինքն է յօրինողը երրորդ կատարեալ քերականութեան մը գրաբարի, կոչուած* Քերականութիւն հայկական (1815) : *Անկէ առաջ գրած է նաև* Քերականութիւն Թօսքանեան լեզուի (1792) : *Դասական շարժումին մասնակցած է իր տաղերով, ամփոփուած «Տաղք Մխիթարեան հարց» խորագրով լոյս տեսած հատորներուն մէջ, ուր ցոյց կու տայ ներշնչում եւ ներդաշնակ արտայայտութիւն: Գրած է նաեւ թատերական գործեր, որոնք անտիպ մնացած են:*

*Թարգմանչական մարզին մէջ ալ Աւետիքեան ունի արժանիքներ. բացի հոգեւոր գրքերուն հայացումներէն՝ թարգմանած է ընտիր գրաբարով Ս. Օգոստինոսի «Յաղագս քաղաքին Աստուծոյ» հոյակապ գործը, որ հրատարակուած է իր մահէն ետք 1841ին՝ երկու հատորներով: «Հայկազեան Նոր Բառարան»ին Ա. տառն ալ ամբողջապէս իր աշխատութիւնն է, որ իր կեանքին մեծ մասը գրաւած է: Ան կը բերէր այսպէս հայ լեզուի զարգացման համար իր կարեւոր նպաստը:*

*Վախճանած է վանքին մէջ՝ 24 Դեկտեմբեր, 1827ին:*

## Հ. ՄԿՐՏԻՉ ԱՒԳԵՐԵԱՆ (1762–1854)



Հ. ՄԿՐՏԻՉ ԱՒԳԵՐԵԱՆ

Եթէ Աւետիքեան եղաւ Մխիթարեան Կաճառին մեծ աստուածաբանը, Աւգերեան էր անոր նշանաւոր հայրախօսը, որ վաթսունեւութը տարի անընդհատ նուիրուեցաւ գրական երկասիրութիւններու: Ծնած է Անգարա, 11 Նոյեմբեր 1762ին. իր հօրը ձեռքով վանք առաջնորդուեցաւ 1774ին եւ ստացաւ քահանայական ձեռնադրութիւնը՝ 1786ին: Իր կեանքը անցուցած է վանքի աշակերտներու դաստիարակութեամբ և դասաւանդութեամբ: Մաս կազմած է երկար տարիներ՝ Միաբանութեան վարչական մարմնին, իբր խորհրդական եւ քանի տարի ալ իբր ընդհ. Աթոռակալ՝ Սուքիաս Սոմալ Աբբահօր ժամանակ: Ութ տարի միայն ապրած է վանքէն դուրս, Պոլսոյ մէջ, քարոզչական պաշտօնով: Մինչեւ կեանքին վերջը՝ գրիչը թողած չէ իր ձեռքէն եւ եղած է զմայլելի օրինակ մը անխոնջ վաստակաւորի եւ մեռած սուրբի համբաւով:

Գործերը՝ բաժնուած վկայաբանական, հայրախօսական, լեզուական, թարգմանչական ճիւղերու՝ այնքան շատ են, որ կրնան գրատուն մը լեցնել:

Վկայաբանական են Լիակատար վարք եւ վկայաբանութիւն սրբոց, հրատարակուած փոքրադիր չափով 12 հատորներու մէջ (1810–1814) եւ մեծադիր մէկ հատորով (1810): Այս գործով իր նպատակը եղած է տալ Հայկական Տօնացոյցին մէջ եղած բոլոր սուրբերուն կենսագրութիւնները եւ վկայաբանութիւնները, շարժած՝ ոչ թէ լոկ բանասիրական դիտումէ մը, այլ նաեւ հո–



Ս. Ղազար դիտուած օդէն

դեւոր օգուտէն ազգայիններու, մանաւանդ եկեղեցական դասին: Այս հրատարակութեամբ գրաւած է Պոլլանդեաններու ուշադրութիւնը, եւ տիրացած հմուտ մկայաբան բանասէրի համբաւ մը:

Աւգերեան որպէս հայրախօս՝ մեթոտիկ աշխատանք մը կատարած է, ծանօթացնելով մեր եկեղեցւոյ Ս. Հայրերուն գործերը՝ արեւմտեան աշխարհի, թարգմանելով զանոնք լատիներէնի եւ կազմելով այսպէս «Մատենադարան Հայ Ս. Հարց» շարքը: Միաժամանակ հայացուցած է նաեւ լատին Ս. Հայրերու և լատին դասականներու գործերը, փոխադարձաբար ծանօթացնելու համար զանոնք իր ազգայիններուն:

Հայրախօսական մարզին մէջ իր համբաւը դարձաւ միջազգային՝ երբ Նախնեաց հայ թարգմանութեամբ պահուած կարգ մը գործեր ծանօթացուց լատիներէնով եւրոպական բանասիրութեան. այսպէս Եւսեբիոսի Քրոնիկոնը, Փիլոն Եբրայեցիի ճառերը, Եփրեմի՝ Տատիանոսի Համաբարբառին մեկնութիւնը, Սեբերիանոսի ճառերը:

Լեզուական տեսակէտով իր անգնահատելի աշխատութիւնն է վերամշակումը եւ ամբողջացումը Հայկազեան Նոր Բառարանին, որուն համար տարիներով վատնած է իր աչքին լոյսը՝ մխրճած հայ ձեռագիրներու մէջ: Սոյն Բառարանին մասին արդէն խօսած ենք մեր նախընթաց էջերուն մէջ՝ Մխիթարեան գրական գործունէութեան ընդհանուր նկարագիրը տուած ատեն:

Այս համառօտ կենսագրութեան մէջ՝ չենք կրնար ծանրանալ իր միւս թարգմանչական եւ հրատարակչական գործերուն, ինչպէս նաեւ հոգեւոր ճառերուն յօրինման, նմանապէս իր բազմաթիւ անտիպ գրուածքներու մասին: Առանձին յիշատակութեան արժանի են իր բանախօսութիւնները հայրախօսական ու մկայաբանական ուղղութեամբ, կատարուած եւրոպական կաճառներու համաժողովներուն մէջ, որոնց անդամակցած էր, ինչպէս՝ Վենետիկոյ Աթէնէոյին եւ Հռոմի Հնագիտական Ընկերութեան: Խոր ծերութեամբ եւ օրինակելի վարքով կը կնքէր իր մահկանացուն (Մարտ 3, 1854) վանքին մէջ, իննըսունեւերկու տարեկան հասակին եւ կը թաղուէր Ս. Ղազարի եկեղեցւոյն աւանդատան մէջ:

## Հ. ՅԱՐՈՒԹԻՒՆ ԱՒԳԵՐԵԱՆ (1774–1854)



Հ. ՅԱՐՈՒԹԻՒՆ ԱՒԳԵՐԵԱՆ

*Եղբայրն էր Հ. Մկրտիչ Աւգերեանի, որուն օրինակին հետեւելով ինքն ալ կ'անդամակցի Մխիթարեան Միաբանութեան։ Ծնած է Անգարա և տասներկու տարեկանին մտած է Ս. Ղազար եւ* 1798*ին ստացած է քահանայական ձեռնադրութիւնը։ Իր կեանքը ամբողջապէս անցած է Վենետիկ, բացի քանի մը տարիներէն՝ երբ առաքելութեան համար ղրկուած է Թրանսիլուանիա։ Նկարագրով եղած է շատ զուարթ ու ընկերաբան։ Երբ Լորտ Պայրն* 1816*ին կը հասնի Վենետիկ և կը սկսի յաճախել Ս. Ղազար, ինքն է անոր առաջնորդը՝ հայերէն լեզուի ուսման մէջ։ Անգլիացի բանաստեղծը կապուած է մեծ բարեկամութեամբ իրեն եւ Միաբանութեան հետ՝ այն երեք տարիներուն* (1816–1818)*, զոր անցուցած է Վենետիկ։ Միասին յօրինած են Քերականութիւններ անգլիերէն եւ հայերէն լեզուներու, ծանօթացնելու համար հայերէնը Անգլիացիներուն եւ անգլիերէնը՝ Հայերուն։ Լորտ Պայրն ամփոփած է նաեւ իր հայերէնի գրաւոր վարժութիւնները հատորի մը մէջ, որուն խորագիրն է* Lord Byron's Armenian Exercises and Poetry, *տպուած Ս. Ղազար։*

*Յետոյ ճանչցած է եւ բարեկամութեամբ կապուած՝ ուրիշ Անգլիացի հայագէտի մը հետ, որ Արուեստից ուսուցչապետն էր Քէնթըրպըրի համալսարանին։ Ճօն Պրէնտ կը կոչուէր այդ բարեկամը, որուն օժանդակութեամբ եւ նպաստով հրատարակած է*

Անգլիերէն–Հայերէն եւ Հայերէն–Անգլիերէն Բառարանները, որոնք գրաբար ըլլալով հանդերձ՝ այսօր տակաւին շատ արժէքաւոր կը նկատուին:

Հ. Յարութիւն Աւգերեան կատարած է յաջորդաբար հետեւեալ աշխատութիւնները. Ատենաբանութիւն Ս. Ներսիսի Լամբրոնացւոյ (1812), հանդերձ իտալերէն թարգմանութեամբ, յետոյ Բացատրութիւն չափուց եւ կշռոց (1821), ուր կ'ուսումնասիրէ Անանիա Շիրակացիի եւ Մ. Խորենացիի քով յիշատակուած չափերու եւ կշիռներու անունները՝ համեմատելով յունականներու, լատինականներու եւ գաղղիականներու հետ: Նպաստած է դասական շարժումին ալ՝ թարգմանելով Միլտոնի Դրախտ կորուսեալը (1824): Աստուածաբանական հրատարակութիւն մըն է Դաւանութիւն եկեղեցւոյն Հայաստանեայց (1845), հանդերձ լատիներէն թարգմանութեամբ: Իր արդիւնքն է նաեւ Ս. Ներսէս Շնորհալիի Հաւատով խոստովանիմի 24 լեզուով հրատարակութիւնը:

Անտիպ կը մնան իրմէ գերմաներէն լեզուի Բառարան մը, ինչպէս նաեւ Յունարէնէ–Հայերէն բառարանը, ուր ամփոփած է Նախնեաց յունարէնի վրայէն կատարած թարգմանութիւններուն բառերը, ճշտելով անոնց զանազան առումները՝ նշանակելով յունարէնի դիմաց: Շատ կարեւոր աշխատութիւն մը, որ բանասիրական գիծով ալ ունի իր շահեկանութիւնը:

Հ. Յարութիւն Աւգերեան եղած է արդարեւ հմուտ տասը լեզուներու. բացի հայերէնէ՝ գիտէր թուրքերէն, իտալերէն, լատիներէն, յունարէն, անգլիերէն, գերմաներէն, գաղղիերէն, հունգարերէն, եբրայեցերէն:

Վախճանած է 1854, Նոյեմբեր 24ին, եղբօրը մահէն ինը ամիս ետքը:

---

## Հ. ՂՈՒԿԱՍ ԻՆՃԻՃԵԱՆ (1758–1833)

Հ. Ղ. Ինճիճեան քեռորդին էր Հ. Միքայէլ Չամչեանի: Ծնած է Կ. Պոլիս, վանք եկած է 1770ին եւ քահանայ ձեռնադրուած 1779ին: Պոլսոյ մէջ անցուցած է իր երիտասարդութեան շրջանը՝ շփուելով ժողովուրդին հետ, ծանօթանալով անոր կարօտութիւններուն ու բերելով իր նպաստը անոր զարգացման: Այս նպատակով հետամուտ եղած է ժողովրդականցնելու պատմական ու գիտական նիւթեր: Առաջին անգամ ինքն է, որ գաղափարը ունեցած է ռամկօրէն լեզուով հրատարակելու Տարեգրութիւնք շարքը (1799–1802), որ տարուան վերջը լոյս կը տեսնէր, տալով նոյն տարուան մէջ պատահած քաղաքական, ընկերային դէպքերու վրայ տեղեկութիւններ: Անոր շարունակութիւնը եղաւ Եղանակ բիւզանդեան (1803–1820), որ ընդհակառակն կը հրատարակուէր տարուան սկիզբը, տալով պատմական ու բարոյական կարեւոր գիտելիքներ ժողովուրդին համար, զբօսեցուցիչ նիւթեր մանուկներու համար եւ օդերեւութաբանական գուշակութիւններ: Եղանակ Բիւզանդեանը արդէն՝ գրեթէ կանոնաւոր աշխարհաբարով էր, եւ Ազդարար թերթի (գրաբար) դադրելէն ետքը, միակը՝ որ հրապարակը բռնեց իբր պարբերաթերթ: 1815ին, դարձեալ աշխարհաբար լեզուով, լոյս կը տեսնէր Ազգասէր խորագրով ամփոփում մը իր ճառերուն, որոնք յորդորակներ էին առաքինութեան, ճոխացած պատմական օրինակներով: Ժողովուրդին կրօնական զարգացման նպաստեց՝ իր շատ սիրուած Աղօթագիրք նոր (1822) գիրքով՝ որ ունեցաւ յաջորդաբար նոր տպագրութիւններ: Դարձեալ աշխարհաբար լեզուով տուաւ իր Դարապատումը, որ պատմական բովանդակութիւն ունէր, խօսելով եւրոպական ազգերու քաղաքական եւ գիտական կեանքի պատմութեան վրայ՝ դիւրին ոճով:

Բացի այս ժողովրդական հրատարակութիւններէն, Ինճիճեան նպաստեց մեծապէս նաեւ հայկական հնախօսութեան՝ իր զոյգ մը մեծ գործերով. որոնցմէ առաջինը եղաւ Ստորագրութիւն հին Հայաստանեայց (1822), մէկ հատորով, որ հին Հայաստանի աշխարհագրութիւնն է, հիմնուած հայ պատմիչներու վկայութիւններուն վրայ, տալով գիտական կերպով Հայաստանի տասնհինգ նահանգներու նկարագրութիւնները, անոնց դիրքին, տարածութեան, եւն: Անոր յաջորդեց իր Հնախօսութիւն հին Հայաստանեայց աշխարհի

(1835), որ կը բաղկանայ երեք հատորներէ: Հնախօսական առաջին լուրջ գործն է մեր մէջ, ուր կը խօսուի ազգային կեանքին եւ բարքերուն, լեզուին, բանակին եւ հագուստներուն վրայ: Իր այս գործերը մինչեւ այսօր հնախօսական տեսակէտով անհրաժեշտ ու հիմնական աղբիւրներ են: Նմանապէս շատ կարեւոր է իր Հայաստանը՝ աշխարհագրական մանրամասն նկարագրութիւն մը, որ մաս կը կազմէ Ագոնց Քիւվէրի «Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի» գործին:

Ինճիճեանի մէջ կայ բանաստեղծ մըն ալ, որ կը յայտնուի իր Ամառանոց Բիւզանդեանի մէջ, ուր նկարագրուած են ընթացիկ ոճով՝ Վոսփորի ափերուն վրայ հանգչող գիւղերն եւ բնութեան գեղեցկութիւնները: Իր նպատակը եղած չէ, այս գիրքով, գրական ստեղծագործութիւն մը տալ մեզի, այլ պարզապէս առաջնորդ մը՝ ճամբորդներու ձեռքը:

Իր բոլոր յիշեալ գործերը հրատարակուած են Վենետիկ, թէեւ անոնց վրայ երկար տարիներ աշխատած է նաեւ վանքէն դուրս եղած ատենը: Վախճանած է 1833, Յուլիս 2ին վանքին մէջ:

---

## Հ. ՄԱՆՈՒԷԼ ՋԱԽՋԱԽԵԱՆ (1770-1835)



Հ. ՄԱՆՈՒԷԼ ՋԱԽՋԱԽԵԱՆ

Ուսումնասէր վանականի տիպար մը. ծնած Կիւմիշխանէ (Պոնտոս) աւանին մէջ՝ 25 Մարտ, 1770ին։ 12 տարեկան հասակին մէջ հասած է Ս. Ղազար և 1791ին ձեռնադրուած քահանայ։ Ղրկուած է Պաշպալով (Թրանսիլուանիա) իբր քարոզիչ, ուր մնացած է շուրջ հինգ տարի։ Ս. Ղազար վերադարձին՝ յանձնուած է իրեն վանքի աշակերտներուն դաստիարակութիւնը, զոր կատարած է տասը տարուան շրջան մը բոլորելով։ 1805էն ետքն է, որ աւելի ազատօրէն նուիրուած է իր գրական կեանքին։

Հմուտ էր դասական յունարէնի եւ լատիներէնի. իսկ եւրոպական լեզուներէն կը ճանչնար կատարեալ կերպով՝ իտալերէն, գաղղիերէն, գերմաներէն եւ անգլիերէն։

Ջախջախեան բերած է իր նպաստը դասական գրականութեան շարժումին, որ յետոյ Թովմաճեանով, Բագրատունիով եւ Հիւրմիւզեան եղբայրներով պիտի մտնէր տիրական ընթացքին մէջ։ Այս ուղղութեամբ թարգմանած է Սողոմոն Կեսների Մահ Աբելի (1825) ոտանաւոր քերթուածը գերմաներէնէ, որ ունեցած է յաջորդաբար նոր տպագրութիւններ 1835ին, 1862ին. յետոյ Ֆենելոնի Տելեմաքը (1826) թարգմանուած ֆրանսերէն բնագրէն, որ շուտով սպառած է. Հոշիոս Սիդրոնիոսի Եղերերգութիւնն ի չարչարանս Քրիստոսի (1830) ոտանաւոր չափով։

Յատուկ բերում մը ունէր բառարաններու կազմութեան. 1804ին հրատարակած է բառարան մը իտալ-հայ-թուրք՝ երրեակ

լեզուներով, նոյնը յետոյ վերատպուած յաւելումով՝ 1829ին, եւ յետոյ ձեռնարկած է մեծագոյն գործին՝ Հայերէն–Իտալերէն եւ Իտալերէն–Հայերէն Բառարաններուն, որոնց վրայ տարիներով աշխատած է, տալու համար ամէն կերպով կատարեալ գործ մը թէ՛ հայերէն բառագիտական տեսակէտով («Նոր Հայկազեան Բառարան»ին վրայ բերելով առաւելութիւն մը նորագոյն ճշտումներով), ինչպէս նաեւ իտալերէն լեզուի բոլոր ոճական բացատրութիւններու ճոխութեամբ:

Ինչպէս ամէն Մխիթարեան, ինքն ալ բերած է իր մասնակցութիւնը հոգեւոր մատեաններու յօրինման՝ ինքնագիր կամ թարգմանածոյ. այսպէս գրած է ոտանաւոր չափով Արհեստ աստուածսիրութեան (1819), թարգմանած է Կարդ. Բոնայի Առաջնորդ երկնից (1835), որ յաջորդ տպագրութիւն մ՚ալ ունեցած է 1856ին, Աղօթք Ս. Պատարագի ի պէտս քահանայից (տպուած շատ ուշ՝ 1894ին):

Զախջախեանի մէջ կար նաեւ բանաստեղծ մը, որ հրահանգուած դասական գրականութեան արուեստով՝ տուած է գրաբար կատարեալ տաղաչափութեամբ եւ ճոխ յանգերով ոտանաւորներ, հրատարակուած «Տաղք Մխիթարեան վարդապետաց» շարքին Բ. հատորին մէջ:

Գրաբարը, զոր կը գործածէ, արդէն առած է իր գրչին տակ գրական արտայայտութիւն մ՚ալ: Աշակերտ Հ. Գ. Աւետիքեանի՝ ան կը շարունակէ ձգտիլ կատարելութեան ոչ միայն մաքուր եւ ընտիր լեզուի՝ ըստ նախնեաց կանոնաւոր շարադրութեան, այլ նաեւ հետամուտ է ճաշակաւոր եւ գրական դարձուածքներու: Տելեմաքի իր թարգմանութիւնը, համեմատուած Մարգար Խօճենց Երեւանցիի թարգմանութեան հետ (տպուած է 1793ին), ցոյց կու տայ իր լեզուական մեծ առաւելութիւնը և գրական ճաշակը թարգմանութեան արուեստին մէջ: Եդուարդ Հիւրմիւզի գաշնակաւոր եւ մեղրահոս լեզուով կատարուած թարգմանութիւնն ալ պիտի գերազանցէ Զախջախեանինը:

Կը վախճանի 3 Յունուար, 1835ին՝ իր վաթսունեւհինգ տարեկանին եւ կը թաղուի Ս. Ղազար:

---

## ԳԵՐՊՏ. ԻԳՆԱՏԻՈՍ ՓԱՓԱԶԵԱՆ (1764–1852)



Հ. ԻԳՆԱՏԻՈՍ ՓԱՓԱԶԵԱՆ

*Ծնած է Կ. Պոլիս 26 Դեկտ., 1764ին: Տասնեւչորս տարեկան էր երբ մտաւ Ս. Ղազար: 1786ին ձեռնադրուած է քահանայ եւ 1795ին ղրկըւած իբր քարոզիչ իր ծննդավայրը, ուր առաքելաջան հոգւով նուիրուած է հոգիներու առաջնորդութեան: 1805ին վերադարձած է Ս. Ղազար, եւ ստանձնած վանքի աշակերտութեան դաստիարակութեան փափուկ պաշտօնը, զոր շուրջ քսան տարի կատարած է, տալով գովելի արդիւնք:*

*1838ին Գրիգոր ԺԶ. Սրբազան Քահանայապետին կամքով ձեռնադրուած է «տիտղոսաւոր արքեպիսկոպոս Տարօնոյ», յաջորդելով Պօղոս Մարուշեան արքեպիսկոպոսին, որ Հռոմի Ուրբանեան Դպրոցին հայածէս աշակերտներուն ձեռնադրիչն էր: Փափազեան արքեպիսկոպոսը իր ալեզարդ եւ մեծավայելուչ կերպարանքով, գիտութեամբ եւ առաքինի վարքով, ուշագրաւ դէմք մը դարձած է Հռոմի եկեղեցական շրջանակներու մէջ եւ մեծապէս սիրուած ու յարգուած: Պիոս Թ. Սրբազան Քահանայապետը, որ իրեն հանդէպ յատուկ յարգանք մը ունէր, ըսած է իրեն համար. «Ս. Ամբրոսիոսի պատկերն է այդ պատկառելի ծերունին» (Բազմ. 1852, էջ 219):*

*Կեանքի վերջերուն խանգարուած է առողջութիւնը՝ հակառակ*

զօրաւոր կազմուածքին, վասնզի բնութեամբ արիւնային ըլլալով՝ 1846ին ունեցաւ կաթուած մը մարմնոյն աջակողմը, որմէ թէեւ բուժուեցաւ՝ սակայն բոլորովին անհետեւանք չմնաց. 1851ին ունեցաւ երկրորդ կաթուած մը՝ որ զինքը գամեց անկողին: Զրկըւած տեսութենէ եւ լսողութենէ՝ իր միակ հոգեկան մխիթարութիւնն էր Քրիստոսի Ս. Խաչը, զոր գրկած աւանդեց իր սրբասուն հոգին, Հռոմի մէջ, 22 Մայիս 1852ին, կազդուրուած եկեղեցւոյ սուրբ խորհուրդներով եւ թաղուեցաւ իր բնակած տան քովի Կուսաստանի եկեղեցւոյն մէջ, Ս. Աստուածածնի խորանին առջեւ:

Փափազեան ունի կարգ մը նկատելի գործեր, որոնք մաս կը կազմեն Մխիթարեան Կաճառին ուսումնական գործունէութեան: Շփում ունեցած ըլլալով ժողովուրդին հետ, զգացած է կարեւորութիւնը գրելու գրքեր, որոնցմով ան նպատակ ունէր հոգեւոր, կրթական եւ հաշուական ուղղութեամբ օգտակար ըլլալու: Այսպէս՝ Գիրք քաղաքավարութեան (1806), ուր կու տայ գրաբար լեզուով մարդկային կենակցութեան կանոնները, Հանգանակ հաւատոյ (1807), որ «Հաւատամք»ի ժողովրդական բացատրութիւնն է ռամկօրէն եւ տաճկերէն. Մանրանկարք որ է Մինիաթուռա (1813), ուր կ'աւանդէ մանրանկարչութեան արուեստի տարրերը, Պաշտօն փառաբանութեան Ս. Աստուածածնի (1818), յօրինելով յորդորակներ և աղօթքներ՝ զօրացնելու համար ջերմեռանդութիւնը Ս. Կոյսին հանդէպ. այս գիրքը ունեցած է յաջորդական տըպագրութիւններ 1862ին եւ 1910ին: Կրկնատումար վաճառականութեան (1824), ուր ընդարձակ կերպով կ'աւանդէ վաճառականներու համար առեւտրական տետրակ բռնելու օրէնքները: Այս գործը մեծագիր եւ գեղեցկատիպ հրատարակութիւն մըն է: Յետոյ գրած է Պատճէնք նամակաց վաճառականութեան (1826), տալով նմոյշներ վաճառականական նամակներու, Հաշուետումար պարզագիրը (1828), որ համառօտութիւն է «Կրկնատումար»ի, եւ յետոյ, դեռ աւելի համառօտ եւ աշխարհաբար լեզուով ամփոփած է զայն Սկզբունք հաշուեմատեանի (1830) խորագրով:

Վերջին գործն է Պատմութիւն եկեղեցական (1848), գրաբար, ուր կ'աւանդէ Քրիստոսի Ծնունդէն մինչեւ ԺԹ. դարու եկեղեցւոյ պատմութիւնը համառօտ ոճով, եւ որ կը բռնէ 1015 էջ: Ունի անտիպ գործ մ'ալ Ճարտարապետութեան վրայ:

Ինչպէս կը տեսնուի, Փափազեան մշակած է այլազան նիւթեր,

գլխաւորապէս եկեղեցական եւ ուսողական գիտութիւններու գիծով, եւ համաձայն Մխիթարեան Վերածնունդի ծրագրին՝ հարթած է ճամբան նաեւ դէպի մարդկային գիտութիւնները:

---

## Հ. ՄԻՆԱՍ ԲԺՇԿԵԱՆ (1777–1851)



Հ. ՄԻՆԱՍ ԲԺՇԿԵԱՆ

Ծնած է Տրապիզոն, 15 Հոկտեմբեր 1777ին, որդի Տրապիզոնցի Մանուկ բժիշկին: 1804ին քահանայ ձեռնադրուելէ եւ վարդապետական ծայրագոյն գաւազանը առնելէ ետքը՝ դրկուած է առաքելութեան իր ծննդավայրը՝ Տրապիզոն, ուր նուիրուած է ժողովուրդի հոգեկան կարօտութիւններուն. բացած է վարժարան մը մանուկներու դաստիարակութեան համար: Սակայն հանդիպելով բազմաթիւ դժուարութիւններու եւ միանգամայն ենթարկուելով հալածանքի, ստիպուած է թողուլ իր կառուցած վարժարանը եւ անցնիլ Տաւրիս (Ղրիմ), ուր աւելի լայն ասպարէզ մը ունեցած է եւ տեղացի բարերարներու նպաստով շինած եկեղեցի, վանատուն եւ վարժարան: Մեծապէս սիրուած եւ յարգուած էր ժողովուրդէն. Աղեքսանդր Ա. (1801–1825) ճանչնալով անոր

արդիւնաւոր գործունէութիւնը՝ պատուած է զինքը զանազան շքանշաններով։ 1845ին Սեւաստոպոլի մէջ, Հ. Մ. Բժշկեան ներկայանալով Նիկողայոս Զարին, նուիրած է իր «Բազմալեզուեան Քերականութիւն»ը եւ կայսրն ալ անոր ոսկի մետալ շնորհած է, ինչպէս յետոյ «Ռուսերէն–Հայերէն» քերականութիւնը նուիրելով Թագաժառանգ Աղեքսանդրին՝ ստացած է իրմէ ակնակուռ մատանի մը։ Նիկողայոս Ա. Զարը (1825–1855) շատ կը գնահատէր Հ. Մ. Բժշկեանի բերած ծառայութիւնը Ղրիմի ժողովուրդին, որուն անձնազոհ առաջնորդն էր։ Կեանքին վերջերը, թոյլտուութեամբ Ձարին, քանի մը տարուան համար անցած է Վենետիկ, վերջացնելու և տպագրութեան հսկելու համար իր քառալեզուեան (ռուս–գաղղ–հայ–թուրք) Բառարանին։ Սակայն չհասաւ տեսնելու աւարտումը այդ գործին՝ վերահաս մահուան պատճառաւ (Բազմավէպ, 1852, 153)։ Հ. Մ. Բժշկեան օգտակար եղած է նաեւ Նախնեաց ձեռագիրներու հաւաքման մէջ. այսպէս իր անունով կը պահուի մանրանկարեալ շատ գեղեցիկ ու փոքրադիր աւետարան մը Ս. Ղազարի մատենադարանին մէջ։

Երկասիրութիւնները՝ որ ունեցան կրթական, լեզուական եւ տեղագրական ուղղութիւն, կու տանք հոս խմբուած ժամանակագրական կարգով. Ճեմարան գիտելեաց (1815), ուր կը խօսի գիտութիւններու և արուեստներու վրայ ոտանաւոր չափով, գրուած գրաբար, տալով ստորեւ նաեւ մեկնութիւններ։ Պատմութիւն վարուց Ռոպէնսոն Քռիւզոյէի (1817), գործ անգլիացի Տէֆոյէի, թարգմանուած աշխարհաբար՝ Ֆրանսերէն լեզուէ։ Այդ թարգմանութիւնը ունեցած է յաջորդական տպագրութիւններ 1836ին, 1858ին, 1875ին, 1886ին եւ 1911ին։ Առակք Եզովբոսի (1818), աշխարհաբար թարգմանուած, եւ որ ունեցած է յաջորդական տպագրութիւններ 1827ին, 1849ին, 1860ին, 1886ին եւ 1931ին։ Պատմութիւն Պոնտոսի (1819), ուր կու տայ աշխարհաբար լեզուով տեղագրական ծանօթութիւններ եւ արձանագրութիւններ Սեւ Ծովու եզերքը գտնուող քաղաքներուն։ Յայտնութիւն աստուածգիտութեան (1820), ուր կ'աւանդէ կրօնական գիտութեան տարրերը. ունեցած է յաջորդ տպագրութիւն մ'ալ 1836ին։ Վարժութիւն մանկանց (1826), գիրք մը աշխարհաբար լեզուի ընթերցման. ունեցած է յաջորդական տպագրութիւններ 1860ին, 1873ին, 1881ին եւ 1888ին։ Քերականութիւն ռուսերէն (1828), հայերուն ռուսերէն սորվեցնելու համար։ Ճանապարհորդութիւն ի Լեհաստան

(1830), ուր կը խօսի Անի քաղաքէն Խրիմ եւ Եւրոպա (գլխաւորապէս Լեհաստան) գաղթած հայերու վրայ, տալով պատմական կարեւոր տեղագրութիւններ. գրուած է գրաբար: Սրբազան պատմութիւն (1836) երկու հատորով, ուր կ'աւանդէ հին Կտակարանի եւ Եկեղեցւոյ պատմութիւնը մինչեւ Գրիգոր ԺԶ. Սրբազան Քահանայապետը: Քերականութիւն հայկազեան լեզուի (1840), յօրինուած հայերէն սորվեցնելու համար, ռուսերէն բացատրութիւններով: Քերականութիւն բազմալեզու (1844), ուր կ'աւանդէ քերականական տարրերը արաբերէնի, պարսկերէնի, թուրքերէնի եւ թաթարերէնի՝ վերլուծական համեմատութիւններով ուրիշ լեզուներու հետ: Բացատրութիւնները տրուած են հայերէն, ռուսերէն եւ գաղղիերէն: Համառօտ նկարագիր վարուց երեւելի արանց (1850), այբուբենական կարգով, ուր կը խօսի հայ եւ օտար նշանաւոր դէմքերու վրայ:

Հ. Մ. Բժշկեան կատարած է իսկապէս կարեւոր դեր մը՝ լեզուագիտական եւ տեղագրական ուղղութեամբ. իր գործերը այսօր ալ դեռ ունին իրենց օգտակարութիւնը՝ իբրեւ աղբիւրներ հայ գաղթականութեան պատմութեան եւ լեզուաբանութեան համար:

---

## Հ. ԵՓՐԵՄ ՍԵԹԵԱՆ (1791–1838)

Առաքելաջան գմայլելի հոգի մը, որ իր բովանդակ կեանքով նուիրուած է Կովկասահայ համայնքին մէջ սփռելու հոգեւոր բարիք, կրթութիւն եւ գիտութիւն՝ բարձրացնելու համար մակարդակը հայ ժողովուրդին։

Ծնած է Կ. Պոլիս, 21 Սեպտեմբեր 1791ին։ Քահանայ ձեռնադրուած է 1814ին։ Երկար տարիներ ապրած է վանքէն դուրս։ Իր գլխաւոր առաքելավայրը եղած է Ախալցխա, ուր շինած է եկեղեցի եւ վանատուն։ Նիկողայոս Ա. ռուս կայսրէն ստացած է Ս. Աննայի «շքանշան խաչը»՝ փոխարէն իր առաքելաջան վաստակներուն։ Մեծ խնամք ունեցած է օժտելու Ս. Ղազարի մատենադարանը հայկական ձեռագիրներով, զոր ստացած է նուէր եւ կամ գնած։ Վախճանած է Ախալցխա, 3 Մայիս՝ 1838ին. իր շիրմին դամբանական վերտառութիւնը գրած է Հ. Ղ. Ալիշան եւ գրկած Տէր Պետրոս Գաղէզեանին՝ որ իրմէ ետքը ժողովրդապետն էր Ախալցխայի։

Հակառակ իր բազմազբաղ կեանքին, գրած է դասագրքեր՝ ինչպէս Արհեստ ճարտասանութեան (1832), գրաբար, բարձրագոյն կարգի աշակերտներուն համար։ Պատմութիւն հին եւ նոր Կտակարանի (1832), աշխարհաբար, որ ունեցած է յաջորդական տպագրութիւններ 1848ին, 1863ին եւ 1872ին։ Պատմութիւն Հայոց (1839) աշխարհաբար, Պատմութիւն չորից ինքնակալութեանց (1833), աշխարհաբար, որ 1848ին ունեցած է երկրորդ տպագրութիւն մըն ալ։ Գրած է գրաբար Նկարագիր վարուց Ստեփանոս Ագոնց Գիւվեր արքեպիսկոպոսի եւ աբբայի (1825)։ Թարգմանած է գրաբար Ս. Օգոստինոսի Առանձնախօսութիւնք եւ առձեռնական (1858), տպուած մահէն ետքը։ Նմանապէս մահէն ետքը տպագրուած է իր մեծագոյն գործը՝ Իրաւագիտութիւն (1851), լուրջ աշխատասիրութիւն մը՝ հետեւելով եւրոպական մեծ հեղինակներու գործերուն, բաժնուած չորս մասերու. բնական օրէնք, գրաւական իրաւունք, տոհմային իրաւունք եւ ազգային իրաւունք։ Առաջին անգամ է որ նման գործ մը հրապարակ կը հանուի մեր վերածընունդի շրջանին՝ ընտիր եւ մաքուր գրաբարով, տալով մղում մը մեր ազգին մէջ իրաւագիտական ուսմանց, եւ որ այսօր ալ, իբր եզրաբանութիւն՝ ունի իր օգտակարութիւնը։

## Հ. Ք. ԱԶՆԱՒՈՐԵԱՆ (1791–1843)

*Ուրիշ առաքելաջան վարդապետ մը, Հ. Քերովբէ Ազնաւորեան, որ գիտցած է առաքելական ոգին միացնել գրական երկասիրութիւններու արդիւնք մը, օժտելով ԺԹ. դարու առաջին կէսին յայտնուած մեր գրաբար գրականութիւնը՝ ճաշակաւոր եւ սահուն թարգմանութիւններով: Ծնած է Պոլիս 1791ին. աշակերտած է Հ. Մկրտիչ Աւգերեանին, որմէ առած է սէրն ու եռանդը դէպի սրբազան մատենագրութիւնը: Ձեռնադրուած է քահանայ 1814ին: Արեւմուտքի եկեղեցական գրողները գրաւած են իր ուշադրութիւնը: Իր գործնական եւ գրական կեանքը, սակայն, շատ կարճ ընթացք մը ունեցաւ եւ հետեւաբար չկրցաւ իր ամբողջ ոգեւորութիւնը գործածել ի նպաստ գրական վաստակներու: Իր անունը կապուած է երկու կարեւոր գործերու հետ. Պոսիւէի* «Discours sur l'histoire universelle»*ի, զոր հայացուցած է* Խօսք ի վէպս ազգաց (1841) *խորագրով զոյգ մը հատորներու մէջ, եւ Կղօդիոս Ֆլէօրիի՝* Կենցաղ Իսրայելացւոց եւ քրիստոնէից*-ի* (1843)*: Գրած է «քոլերայի» վրայ բժշկական գործ մը եւ թարգմանած իտալերէնի՝ Հ. Ղուկաս Ինճիճեանի «Ամարանոց բիւզանդեան» բանաստեղծական նկարագրութիւնը: Վախճանած է Պոլիս* 1843, *Ապրիլ* 4*ին:*

---

## Հ. ԵՂԻԱ ԹՈՎՄԱՃԱՆ (1777–1848)

*Ծնած է Կ. Պոլիս,* 18 *Դեկտեմբեր* 1777*ին:* 1798*ին քահանայ ձեռնադրուելէն ետքը՝ նուիրուած է հայերէն լեզուի ուսումնասիրութեան, մանաւանդ Նախնեաց լեզուի քննութեան, համեմատելով զայն իրենց յունական բնագիրներուն հետ: Մեծ հմտութիւն ունէր դասական լեզուներէն՝ յունարէնի եւ լատիներէնի:*



Հ. ԵՂԻԱ ԹՈՎՄԱՃԱՆ

Թարգմանչական ա ռ ա ջ ի ն մեծ փորձը եղած է Հատընտիր գիրք եւ ճառք եւ ներբողեանք (1818) Ս. Յովհան Ոսկեբերանի, կատարուած ուղղակի յոյն բնագրէն, ընտրելով այն ճառերը՝ որոնց Թարգմանութիւնը կը կարծէր թէ չէր կատարուած Նախնիքներէն: Յանդուգն կարծուած էր այս ձեռնարկը՝ դարձաւ յետոյ պարծանք իր անունին, երբ այդ ճառերէն մաս մը յայտնուելով Նախնեաց Թարգմանութեամբ՝ ապացուցին թէ ի՛նչքան ընտիր ճաշակ, գիտակցութիւն եւ յունարէնի խոր հմտութիւն ունէր Հ. Ե. Թովմաճան: Կայ անշուշտ տարբերութիւն մը երկու Թարգմանութիւններու միջեւ. Նախնեաց կուռ եւ սեղմ արտայայտութեան հակառակ՝ Թովմաճան գործածած է լայն, ծաւալուն եւ հանդիսաւոր ոճ մը:

Երկրորդ մեծ գործը Թարգմանչական ասպարէզի վրայ, եղաւ Պլուտարքոսի Զուգակշիռքին Թարգմանութիւնը՝ վեց հատորներով: Յետոյ Վիտայի Քրիստոսականը (1832), հնգետասանոտեան չափով եւ յանգաւոր. նոյն չափով Թարգմանած է նաեւ Հոմերոսի դիւցազներգութիւնները՝ Եղիականը (Իլիական) եւ Ոդիսականը, առաջինը՝ 1843ին եւ երկրորդը՝ 1848ին:

Ժողովրդական նկարագիր ունի իր Դպրութիւն նամակաց-ը (1805), ուր կը սորվեցնէ գրաբար եւ աշխարհաբար լեզուով նամակ գրելու արուեստը, Իմաստութիւն մարդկային (1833), ուր կը սորվեցնէ թէ ի՛նչպէս պէտք է շարժի բանաւոր մարդը, իր պարտքերուն կատարման մէջ՝ հանդէպ Աստուծոյ, անձին եւ ընկերոջ: Աստուածաբանական է Եղծ աղանդոցն Լութերի և Կալվինի (1847),

գործ Փրանսացի Տըլաֆորէի, գրաբար թարգմանուած: Յիշուելու արժանի են յետոյ Ս. Բեռնարդոսի Ճառք ի գովութիւնս Մօր Կուսի (1874), թարգմանուած գեղեցիկ գրաբարով լատիներէն բնագրէն եւ հրատարակուած յետ մահու: Քարոզչական է Քառասնորդական կամ Հատընտիր քարոզք (1852), թարգմանաբար յօրինուած եւ հրատարակուած դարձեալ յետ մահու: Ունի քերթողական փորձեր, լոյս տեսած «Տաղք Մխիթարեան վարդապետաց» շարքին՝ Բ. հատորին մէջ:

Կը մնան իրմէ անտիպ ուրիշ գործեր, որոնցմէ գլխաւորներն են. Ողբերգութիւններ Եւրիպիդէսի, Բնական պատմութիւն եւ քաղաքավարութիւն Արիստոտէլի, եւ Գրիգոր աստուածաբանի հատընտիր ճառեր, թարգմանուած իրենց բնագիրներէն:

Մխիթարեան դպրոցի սկզբնական ընթացիկ գրաբարէն ետքը, զոր գործածած են Ջամչեան, Ինճիճեան, Աւգերեան, ան սկսած է տալ լեզուին վայելչութիւն, ճկունութիւն եւ գեղեցկագիտական ուղղութիւն: Այս հոսանքին հետեւեցան նաեւ Հ. Գ. Աւետիքեան եւ Հ. Մ. Ջախջախեան, բայց ինքը գերազանցեց զանոնք:

Հ. Ե. Թովմաճանի արժէքը կը կայանայ ոչ միայն Նախնեաց լեզուի նկարագրին ուսումնասիրութեան, այլ նաեւ հարթելուն մէջ ճամբան դէպի յունա-լատին դասական գրականութիւնը, աւելի լայն չափով՝ քան ինչ որ ըրին զինքը կանխողները: Այս մարդին մեծագոյն ներկայացուցիչը պիտի ըլլայ յետոյ իր աշակերտը՝ Հ. Ա. Բագրատունի:

Վախճանած է վանք, 23 Օգոստոս, 1848ին:

## Հ. ԱՐՍԷՆ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ (1790–1866)



Հ. ԱՐՍԷՆ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ

*Հ. Արսէն Բագրատունի ծնած է Կ. Պոլիս՝* 21 *Օգոստ.* 1790*ին. մտած է Ս. Ղազար* 1810*ին: Նախ քան ուսումնական շրջանին աւարտումը՝ ան ձեռնարկած էր իր թարգմանչական փորձերուն՝ յոյն եւ լատին դասականներէն, որ իրենց բնագիրներուն մէջ կարդալու մեծ հմտութիւն եւ վարժութիւն ունէր: Ժամանակ մը մնա–*

յով Ս. Ղազար՝ հայերէնի եւ գրականութեանց ուսուցչութիւն ըրած է վանքի աշակերտներուն եւ հանած երկու նշանաւոր հետեւորդներ իր դասական ուղղութեան, Գէորգ եւ Եդուարդ Հիւրմիւզեան եղբայրները: Գացած է Փարիզ եւ պետական գրատան մէջ ըրած է օրինակութիւններ հայկական ձեռագիրներէն եւ բերած Ս. Ղազար:

1831ին՝ Պոլսոյ մէջ Տիւզեան ազնուական գերդաստանին դըրանէրէց նշանակուած է, եւ հոն մնացած մինչեւ 1856: Անկէ ետքը դառնալով Ս. Ղազար, լրացուցած է իր թարգմանութիւնները եւ ձեռնարկած «Աստուածաշունչ»ի նոր հրատարակութեան մը, որ տեղի ունեցաւ 1860ին: Վախճանած է վանք՝ 24 Դեկտ. 1866ին:

Գործերը. Բագրատունիի մէջ կայ մեծ քերականագէտ մը, մեծ թարգմանիչ մը եւ դասական մեծ քերթող մը: Քերականագէտը արդէն կը սկսի յայտնուիլ առաջին անգամ իր Քերականութիւն գաղղիականով (1821), ուր խոր հմտութիւն ցոյց կու տայ ֆրանսերէն լեզուի: Քառասուն եւ աւելի տարիներու փորձառութեան ու հմտութեան արդիւնք է Ի պէտս զարգացելոց (1852) քերականութիւնը, հարուստ շտեմարանը հայ լեզուի:

Դասական գրականութիւններէն կատարած իր թարգմանութիւնները եղան հետեւեալները. Նկարագիրք Թէոփրաստի (1830), Վիրգիլիոսի Մշակականք եւ Որատիոսի Արուեստ քերթողութեան (1847) նոյն հատորին մէջ հրատարակուած, Միլտոնի Կորուստ դրախտին (1861), Ճաշակ հելլէն և լատին ճարտարախօսաց (1863), ուր ամփոփած է թարգմանութիւններ՝ Եսքինէսի, Դեմոսթենէսի եւ Կիկերոնի ճառերէն, Հոմերոսի Իլիականը (1864), Ուկոյ Ֆոսքոլոյի Տաղ յաղագս գերեզմանաց (1865), Ճաշակ հին եւ նոր ողբերգութեանց (1869), ուր ամփոփուած են Սոփոկլէսէն, Ռասինէն, Վոլթերէն եւ Ալֆիերիէն ըրած թարգմանութիւնները, Պոսիւէի Ճառք դամբանականք (1870), Յ. Կեսարի Յիշատակարանք (1874): Այս շարքին վերջին երեք գործերը հրատարակուած են իր մահէն ետքը:

Ունի իմաստասիրական գիծով՝ Արուեստ բանականը (1825), թարգմանութիւն Ֆ. Սոաւէի գործին, եւ ինքնագիր «Սկզբունք ուղիղ խորհելոյ եւ բարւոք կելոյ» (1857):

Բագրատունիի մէջ դասական բանաստեղծը կը յայտնուի իր Տաղերուն մէջ՝ ամփոփուած «Տաղք Մխիթարեան վարդապետաց»

շարքին Ս. հատորին, եւ մանաւանդ իր Հայկ Դիւցազն–ի մէջ՝ որ ազգային դիւցազներգութիւն մըն է, զոր ան ուզած է տալ ազգին՝ լրացնելու համար պակասը հայկական «Իլիական»ի մը: Բագրատունի իր այս գործով մեծ վարկ ունեցաւ ժամանակակիցներու մօտ, իբր դիւցազներգակ քերթող: Հոկայ կառոյցքով այս դիւցազներգութեան նիւթն է Հայկին պատերազմը Բելին դէմ, պաշտպանելու համար աստուածապաշտութիւնը եւ հայրենիքը:

Բագրատունիի արժէքը կը կայանայ այն անգնահատելի ծառայութեան մէջ՝ զոր ան բերած է հայերէնի վերջնական կատարելութեան համար, հարթելով ճամբան դէպի գեղեցկագիտական ըմբռնումներն ու ճաշակը՝ 1850ին ծայր տուած աշխարհիկ գրականութեան մը զարգացման համար:

---

## ԳԵՐՊԾ. ԵԴՈՒԱՐԴ ՀԻՒՐՄԻՒԶ (1799–1876)

Բարձր եկեղեցականի ազնուական տիպար մը, դասական գրականութիւններու հմուտ թարգմանիչ եւ բանաստեղծ. ծնած է Կ. Պոլիս, 30 Յունուար 1799ին. 1812ին մտած է Ս. Ղազար եւ քահանայական ձեռնադրութիւնը ընդունած՝ 17 Յունուար 1819ին: Եպիսկոպոսական աստիճանի բարձրացած է 19 Հոկտ. 1847ին, յաջորդելով Գերպծ. Իգնատիոս Փափազեանին՝ իբր ձեռնադրիչ եպիսկոպոս Հաւատասփիւռ Ս. Ժողովի վարժարանին հայածէս աշակերտներուն: Իր կեանքը, գրեթէ ամբողջապէս, անցած է Հռոմի մէջ, նուիրուած իր գրաւորական աշխատանքներուն: Հոն, եկեղեցական բարձրագոյն իշխանութեանց հետ շփում ունեցած է ու վայելած գիտնական եւ սրբակեաց եպիսկոպոսի մը համբաւը: Վախճանած է 26 Հոկտ. 1876ին՝ Հռոմի մէջ: Մարմինը փոխադրուած է յետոյ Ս. Ղազար:

Գործերը. – Բազմաթիւ են իր արտադրութիւնները, որոնց վրայ կը զգացուի շնորհք եւ օծում: Առաջին գործն է Ռոլէն Ֆրան–



ԳՐՊՏ. ԵԴՈՒԱՐԴ ՀԻՒՐՄԻՒԶ

*սացիի* Հնախօսութիւն Հռոմէական*-ի թարգմանութիւնը, մասնակցութեամբ իր եղբօր Գէորգի. ընդարձակ գործ մը՝ հրատարակուած վեց ստուար հատորներու մէջ՝* 1829*ին:*

*Ֆրանսական գրականութենէն հայացուցած է յաջորդաբար Պարթելեմիի* Ուղեւորութիւնք Անաքարսեայ (1836), *վեց միջակ հատորներով, Ֆլորիանի* Նումա Պոմպիլիոսը (1853), *Ֆենելոնի* Տելեմաքը (1850), *Պեռնարտէն տը Սէն Փիէրի* Պօղ եւ Վիրգինէ (1860) *վիպասանութիւնը, Ժ. Ռասինի* Փեդրա *ողբերգութիւնը* (1861), *ինչպէս նաեւ Պոսիւէէն, Պուրտալուէն եւ Մասիյլոնէն ընտրուած էջեր Ս. Աստուածածնի վրայ՝ տիտղոսուած* Բեմասացութիւնք ի Տիրամայրն (1879):

*Իտալական գրականութենէն թարգմանած է Ալֆիէրիի* Մերոպէ *ողբերգութիւնը, Վ. Մոնթիի* Արիստոդէմ*ը, եւ Մանծոնիի* Խօսեցեալք*ը, եւ Մեթասթազիոյի* Սրբազան թատերգութիւնք*ը* 1873–1876*ի ընթացքին:*

*Իսկ լատին գրականութենէն հայացուցած է Վիրգիլիոսի* Ենէականը՝ *երկու անգամ, առաջին անգամ մետասանոտեան չափով եւ յանգաւոր* (1845), *եւ երկրորդ անգամ ծերութեան ատեն՝ հայկական չափով, հետեւելով Բագրատունիի արուեստին: Վիրգիլիոսէն թարգմանած է նաեւ* Հովուականք (1870), *Փեդրոսի* Առակք (1855), *Տակիտոսի* Տարեգիրքը (1872), *եւ աշխարհաբար լեզուով՝ Մարկոս Աւրելիանոս կայսեր* Թուղթերը (1868):

*Բացի գրական գործերէն թարգմանած է նաեւ կարգ մը հոգեշահ գրքեր, որոնց ընտրութեան եւ հայացումին մէջ կը յայտնուի միշտ իր հոգիին ազնուականութիւնը: Այսպէս Փրանսացի*

*Բինար քահանային* Հուր սիրոյն Քրիստոսի, *եւ Միք. Փիանոյի* Հովիւ հոգեւորը՝ *հինգ հատորներու մէջ, Ս. Ֆ. Սալեզացիին* Աստուածասէրը, *եւ գրած է չորս հատոր* Տեսական եւ բարոյական աստուածաբանութիւնը՝ *հետեւելով Բերոնէի եւ Լիգուորիի:* Յօ*րինած է համառօտ ընթացքներ՝* Ճարտասանութեան, Արուեստ Քերթողութեան *եւ* Դիցաբանութեան:

*Բանաստեղծական նուրբ զգայնութեամբ կատարած է յաջողութիւններ Աստուածաշունչի կարգ մը գրքերուն, ինչպէս* Յովբի, Հին կտակարանի օրհնութիւններուն, *ուրիշ հատոր մը, կոչուած* Մաղթանք չափաւ, *եւն.:*

*Գրած է ներշնչուած քնարական ոտանաւորներ՝ բնութեան եւ մարդկային սիրոյ թրթռացումներով, որոնք ամփոփուած են «Տաղք Մխիթարեան վարդապետաց» շարքին Գ. հատորին մէջ: Բայց իր ինքնագիր ամէնէն գեղեցիկ գործն է* Բուրաստանք (1851) *քերթուածը՝ ուր, ինչպէս Վիրգիլիոս իր «Մշակականք»ի մէջ, կը սորվեցնէ պարտէզներու յարդարումը եւ ծաղիկներ խնամելու արուեստը՝ բանաստեղծական շունչով եւ ոճով:*

*Հիւրմիւզի բոլոր թարգմանութիւններու մէջ, արձակ կամ չափածոյ, եւ ինքնագիր գրական արտադրութիւններուն վրայ, ամէնէն նկատելի կէտը՝ շնորհքի եւ ներդաշնակութեան դեղումն է, որով իր տողերը կ'առնեն դաշնակաւոր ընթացք եւ միանգամայն ազնուական ձեւ մը արտայայտութեան: Ան եղած է, արդարեւ, մեծ հոգեւորական մը եւ մեծ մատենագիր մը, արժանի եւրոպական մեծ դէմքերու՝ ինչպէս Ֆենելոնի մը կարգին դասուելու:*

---

## Հ. ՌԱՓԱՅԷԼ ԹՐԵԱՆՑ (1799–1858)



Հ. ՌԱՓԱՅԷԼ ԹՐԵԱՆՑ

*Եզական դէմք մը, պատկառելի եւ խոհական վարդապետ մը, փորձառու եւ աշխարհափորձ, որ նշանաւոր եղած է իբր դաստիարակ եւ հռետոր։ Ծնած է Կ. Պոլիս, 15 Մայիս 1799ին, ձեռնադրուած 29 Օգոստոս 1819ին։ Երկար ատեն վարած է տեսչութիւնը Ռափայէլեան եւ Մուրատեան նորաբաց վարժարաններու, հանելով ուսեալ աշակերտներ։ Դասաւանդած է ճարտասանութիւն եւ փիլիսոփայութիւն, որոնք իրեն նախընտրած նիւթերն եղած են։ Հ. Ալիշան անոր մահուան առթիւ (որ տեղի ունեցած է Փարիզ՝ 9 Դեկտ. 1858ին) խօսած է դամբանական ճառ մը, լի գովեստով եւ հիացումով անոր հոգեկան մեծութեան, մտքի բարձրագոյն զարգացման եւ դաստիարակչական կարողութեան վրայ։*

*Հ. Ռ. Թրեանց, հակառակ իր բազմազբաղ կրթական գործունէութեան, արտադրած է նաեւ գործեր, որոնցմէ առաջինը կրնայ նկատուիլ իր* Ճառք–*ը* (1845)*, որ ամփոփոյք մըն է խօսած ճառերուն՝ գրաբար լեզուով, ազգային դէմքերու, լեզուի եւ պատմութեան վրայ.* Նոր մարդավարութիւն (1856) *կրթական գործ մը,* Տարերք ժամանակագրութեան (1857) *փոքր տետրակ մը, երկուքն ալ ազգային վարժարաններու համար։ Թարգմանած է աշխարհաբար լեզուով Թրոյգի* Տրամաբանութիւնը (1856)*, գործ Նէապոլսեցի իմաստասէրի մը՝ որ այդ օրերուն հռչակ կը վայելէր Իտալիոյ մէջ։*

## Հ. ՊԵՏՐՈՍ ՄԻՆԱՍԵԱՆ (1799-1867)



Հ. ՊԵՏՐՈՍ ՄԻՆԱՍԵԱՆ

Իր օրերուն ազգային դէմք մը դարձած էր Հ. Պետրոս Մինասեան, իբրեւ գործիչ քան թէ իբր գրագէտ անձնաւորութիւն:

Ծնած է Կ. Պոլիս 9 Հոկտեմբեր, 1799ին, եւ անդամակցելով Մխիթարեան Միաբանութեան՝ քահանայ ձեռնադրուած է 9 Նոյեմբեր, 1823ին:

Իր գործունէութիւնը գլխաւորապէս նուիրուած է դաստիարակչական ասպարէզին, իբր առաջնորդ ազգային, կրթական եւ ուսումնական կեանքի, մեծապէս օգտակար ըլլալով Նախկին Սաներու եւ Հայրենասիրական միութիւններու մէջ՝ իր խորհուրդով եւ քաջալերութեամբ: Ան զարկ տուած է թատերական սեռի ծաւալման մեր ազգին մէջ, յօրինելով ինքնիկ պատմական ողբերգութիւններ: Այսպէս նկատի առնուելիք են իր Խոսրով մեծն (1845) եւ Սմբատ առաջին (1845) թատերական գործերը, որոնք թէեւ գրաբար գրուած էին, սակայն առաջին տպագրուած գործերն եղան այս ուղղութեամբ, եւ որոնցմէ ետքը Մխիթարեան սաներ արտադրեցին ուրիշներ եւ այսպէս հետզհետէ ծաւալեցաւ շարժումը: Հրատարակած է նաեւ Թուաբանութիւն բանական, Արուեստագրութիւն հայկական, եւ թարգմանած է հոգեշահ մա-

տեաններ, ինչպէս Ս. Ի. Լոյոլայի Հրահանգ կրթութեան-ը, օգտակար ըլլալու համար քահանայական դասին: Վախճանած է 19 Օգոստոս, 1867ին՝ Փարիզ, ուր ազգային գաղութին մէջ մեծ վարկ կը վայելէր իր խոհեմ առաջնորդութեամբ եւ խօսքին ազդեցութեամբ:

---

## Հ. ՆԵՐՍԷՍ ՍԱՐԳԻՍԵԱՆ (1800–1866)



Հ. ՆԵՐՍԷՍ ՍԱՐԳԻՍԵԱՆ

Հայրենասէր մը, որ Ալիշանէն առաջ համբուրած է հայրենի հողն ու քարը, համրած յուշարձանները եւ քրտինքով, ըսենք նաեւ կեանքի գնով՝ այցելած է հայրենական երկիրը եւ աւանդած մեզի: Նշանաւոր դէմք մը՝ մեր ազգային տեղագրական աշխատանքներու մէջ: Ծնած է Տրապիզոն, 3 Հոկտեմբեր 1800ին. քահանայ ձեռնադրուած է 17 Յունուար, 1829ին՝ յառաջացած տարիքին մէջ եւ ապա նուիրուած առաքելական ասպարէզին:

Տեղագրական ծրագրով մը ճամբորդած է, մեկնելով Զմիւռնիայէն, Փոքր եւ Մեծ Հայքի գիւղերն ու քաղաքները, եւ ամփոփած է տասնեակ մը տարիներու ընթացքին (1843–1853), իր ճամբորդութիւններուն արդիւնքը հատորի մը մէջ՝ որ կը կոչուի Տեղագրու-

թիւնք ի փոքր եւ ի մեծ Հայս (1864), *ուր մանրամասն եւ խղճամիտ կերպով կու տայ նկարագրութիւնները իր այցելած վայրերուն, չմոռնալով ամէնէն մանր յիշատակարանները ու արձանագրութիւնները, խօսելով տեղական բարքերուն վրայ եւ գրի առնելով ինչ որ հարկաւոր համարած է ազգային հայկական պատմութեան եւ աշխարհագրութեան համար:*

*Իր գործը, տեսակէտով մը, մղում տուած է Հ. Ալիշանի տեղագրական ընդարձակ գործերուն:*

*Հրատարակած է նաեւ* Վարք Հարանց (1855) *Նախնեաց թարգմանութիւնը, երկու հատորով: Վախճանած է Ֆիէսսոյ տ'Արթիքոյ գիւղը, ուր Մխիթարեանները ունէին իրենց ամարանոցը, 21 Յունիս, 1866ին:*

---

## Հ. ԱՒԳՍԵՆՏԻՈՍ ԳՈՒՐԳԷՆԵԱՆ (1826–1900)



Հ. Ա. ԳՈՒՐԳԷՆԵԱՆ

*Սրբակեաց կրօնաւոր, աստուածարեալ դէմք մը՝ վանական կեանքի մեծ զաստիարակ մը՝ ծնած է ինքն ալ Կ. Պոլիս, 27 Դեկտեմբեր 1826ին, եւ քահանայ ձեռնադրուած՝ 25 Դեկտ. 1844ին: Վախճանած է վանքին մէջ՝ 7 Փետրուար 1900ին: Իր կեանքը գոհած է պատրաստելու մոքեր եւ հոգիներ՝ իբր ուսուցիչ եւ տեսուչ վանքին մէջ, ինչպէս նաեւ Պոլսոյ եւ Փարիզի Մխիթարեան վարժարաններուն մէջ: Ճամբորդած է մինչեւ Հնդկաստան Միաբանութեան գործերուն համար, եւ ժամանակ մըն ալ մնացած է Հռոմ՝ որպէս գործակալ. ատկայն իր կեանքին մեծ մասը անցած է Ս. Ղազար, հոգեւոր եւ գրական մարզին նուիրուած: Օսմանեան կառավարութենէն առաջած է «Մէճիտիէ»ի պատուանշանը:*

Հմուտ գրաբարագէտ էր, այնքան՝ որ գովեստի արժանացած է Բագրատունիէն: Կը ճանչնար, բացի դասական յունարէնէն եւ լատիներէնէն՝ եւրոպական գլխաւոր լեզուները:

Թարգմանած է գրաբար՝ Դիոնեսիոս Ֆրեսինուս եպիսկոպոսի Պաշտպանութիւն քրիստոնական հաւատոյ (1866), իմաստասիրական-ջատագովական գործ մը, երկու հատորներով: Գրած է Տարերք իմաստասիրութեան (1869) ընդարձակ կերպով եւ աշխարհաբար՝ հինգ հատորներու մէջ. Համառօտ քերականութիւն անգլիական բարբառոյ (1853), գրաբար բացատրութեամբ. Ընտանեկան պատասխանիք անկրօնից (1855):

Թարգմանած է աշխարհաբար Աննա կամ սէր ծնողական (1882), վէպ մը Մարլէյի. Իրք հանդերձեալ աշխարհին (1880), իմաստասէրի մը օրագիրը փիլիսոփայական եւ աստուածաբանական հարցերու վրայ՝ գործ Պոթէն Փրանսացիի: Լորտ Չեսթըրֆիլտի Խրատք առ որդին՝իւր (1873), եւ Պատմութիւն վարուց Մարիամու կուսամօր Աստուածածնի (1885), գործ Օրսինի Փրանսացի քահանային. Հրահանգ պաշտօնէից եկեղեցւոյ (1889), գործ Հ. Ա. Թոնեի. Սանդուխք արքայութեան (1894) Ս. Օգոստինոսի, վերջին երկուքը՝ գրաբար լեզուով:

Բազմավէպի խմբագրութիւնը վարած է 1852–1853, իբրեւ երրորդ խմբագիր, յետ Հ. Գ. Այվազովսքիի եւ Հ. Ալիշանի: Հրատարակած է շարք մը յօդուածներ բնական գիտութիւններու վրայ, ժողովրդական պարզ ոճով:

---

## Հ. ԱԲՐԱՀԱՄ ՃԱՐԵԱՆ (1819–1892)



Հ. ԱԲՐԱՀԱՄ ՃԱՐԵԱՆ

Գիտնականի տիպար, փորձառու դաստիարակ, դասընկեր Հ. Ղ. Ալիշանի։ Ծնած Կ. Պոլիս՝ 1 Սեպտ. 1819ին։ Տասներկու տարեկանին մտած է Ս. Ղազար եւ ձեռնադրուած քահանայ 1840ին։

Հ. Ա. Ճարեան նշանաւոր դէմք մը եղաւ իբր քարոզիչ՝ իր խօսքին եւ ձայնին հզօր շեշտով, և տիրացաւ մեծ համբաւի՝ Պոլսոյ մէջ, ուր երկար ատեն ապրած էր, վարելով Բերայի և Քաղկեդոնի Մխիթարեան վարժարաններու տեսչութիւնը։ Եղած է տեսուչ նաեւ Վենետիկոյ Ռափայէլեանին եւ հասցուցած բազմաթիւ զարգացեալ աշակերտներ։

Բարձր մտաւորական մըն էր, օժտուած գեղեցկագիտական ճաշակով, հմուտ դասական յունարէնի եւ լատիներէնի եւ եւրոպական գլխաւոր լեզուներու։ Մասնակցած է Բազմավէպի դասական դպրոցին. այս գծով նշանակելի են. Կայիոս Սալլուստիոսի Պատմութիւն Կատիլինեան դաւակցութեան եւ Յուգուրդեան պատերազմին (1856), Կ. Տակիտոսի Կենցաղ Ագրիկոլայ, Բարք Գերմանիոյ եւ Տրամախօսութիւն զհռետորաց (1874) մէկ հատորի մէջ, Թուկիդիդէսի Պատմութիւն Պելոպոնեսական մարտին (1887), Պղատոնի Փեդոն–ը կամ Վասն անմահութեան հոգւոյ (1870) տրամախօսութիւնը, Նափոլէոն Գ.ի Պատմութիւն Յուլիոս Կեսարու, Ա. հատոր (1867)։ Թարգմանած է նաեւ Ե. Կեսարացիի Պատմութիւն եկեղեցւոյ (1877) յոյն բնագրէն։ Ունի դասագրքեր Երկրաչափութեան (1843), Սկզբունք պատմութեան ազգաց (1846), Պատմութիւն Գաղղիացւոց (1849) երկու հատորով։

## Հ. ՂԵՒՈՆԴ ԱԼԻՇԱՆ (1820–1901)

*Հ. Ղ. Ալիշան, յետ դասական դպրոցի մեծագոյն ներկայացուցիչներուն, եղած է ամէնէն հզօր կարողութեամբ օժտուած դէմքը Մխիթարեան Կաճառին, եւ որ իր բանասիրական, պատմական, հնախօսական եւ բանաստեղծական գործերով մեծապէս ուշագրաւ դարձած է։*

*Ծնած է Կ. Պոլիս, 18 Յուլիս, 1820ին։ Մկրտութեան անունով կոչուած էր Քերովբէ, ինչպէս եղբայրը՝ Սերովբէ, որ հնահաւաք մը եղաւ, պահպանելով հօրենական տան աւանդութիւնը։*

*Հ. Ղ. Ալիշան կը ձեռնադրուի քահանայ 1840ին, եւ կը նուիրուի տենդագին իր գրական աշխատանքներուն՝ նոյնիսկ Վենետկոյ Ռափայէլեան եւ Փարիզի Մուրատեան վարժարաններուն մէջ պաշտօնավարած տարիներուն։ Ուսուցչական եւ դաստիարակչական գործունէութիւնը տեւած է, փոքրիկ ընդհատումներով, մինչեւ 1872։ Այս թուականէն ետքն է, որ ան այլեւս առանձնացած Ս. Ղազարի մէջ, ամբողջապէս տուած է ինքզինքը իր տեղագրական մեծ գործերուն եւ բանասիրական հրատարակութիւններուն։*

*Երիտասարդութեան շրջանին իր մէջ յայտնուած է նաեւ բանաստեղծ մը ռոմանթիք շունչով, որ ազդած է մեծապէս իր ժամանակակիցներուն վրայ եւ ամբողջ ազգը սիրած է անոր հայրենասիրական քնարը, «Հայոց աշխարհիկ»ի երգիչ մեծ բանաստեղծը։ Իր երգերը ամփոփուած են իր ձեռքով* Նուագք*-ներու հինգ հատորներուն մէջ, ուր մեծ մասը իր բանաստեղծութիւններուն, գրաբար գրուած, կը պարունակէ շատ գեղեցիկ եւ ներշնչուած էջեր։*

*Հ. Ղ. Ալիշանի պատմա-հնախօսական գործերը բազմաթիւ են, որոնց մէջ առաջինն է* Քաղաքական աշխարհագրութիւն*-ը* (1853), *ուր կը խօսի աշխարհի բոլոր երկրամասերուն վրայ.* Տեղագիր Հայոց մեծաց (1855), Նշմարք եւ Ճշխարք Հայաստանի (1870), Շիրակ (1881), Սիսուան (1885), Այրարատ (1890) Սիսական (1893), Հայապատում (1901–2)։

*Ուսումնասիրութիւններն են.* Ներսէս Շնորհալի եւ պարագայ իւր (1873), Հայ բուսակ (1895), Պատմութիւն եկեղեցեաց եւ վանօրէից Եգիպտոսի (1895), Հայ-Վենետ (1896), Հին հաւատք



Հ· ՂԵՒՈՆԴ ԱԼԻՇԱՆ

Հայոց (1895), Կամենից կամ Տարեգիրք Լեհաստանի (1896), Արշալոյս քրիստոնէութեան Հայոց (1901), Հայաստան նախ քան զլինելն Հայաստան (1905):

*Գրական բնոյթ ունին, բացի վերոյիշեալ Նուագ-ներէն, նաեւ* Յուշիկք հայրենեաց Հայոց (1869), *եւ* Խորհրդածութիւնք ընդ եղեւնեաւ (1874):

*Կատարած է Նախնեաց գործերէ բազմաթիւ հրատարակութիւններ· այսպէս* Թուղթ Աբգարու, Մեկնութիւն Պատարագի

(Խոսրով Անձեւացիի), Պատմութիւնները՝ Վարդան վարդապետի եւ Կիրակոս Գանձակեցիի, Ասիզք Անտիոքայ, Վարք եւ վկայաբանութիւնք սրբոց՝ 2 հատոր, եւ 24 փոքր հատորներու մէջ՝ այլեւայլ կտորներ, ընդհանուր տիտղոսով մը կոչուած՝ Սոփերք հայկականք, եւ յետոյ Գիրք վաստակոց, Աբուսահլ Հայ, Վարք Ս. Գէորգայ, Վանորայք Երուսաղէմի, եւն...:

Բայց յիշատակուած գործերէն ունի նաեւ թարգմանութիւններ, ինչպէս Քնար ամերիկեան, Լորտ Պայրընի Առ Իտալիա քերթուածը, Ռուտոլֆ Հաւբերդուսի գիւղանկարգութիւնը, եւ հոգեւոր մատեաններ, ճառեր եւ աղօթքներ:

Ալիշանի մէջ կայ ոչ միայն մեծ գիտնական մը, սուրբ մը, բանաստեղծ մը, այլ մեծ հայրենասէր մը՝ որ հայրենի երկրին քարերուն, յուշարձաններուն, արձանագրութիւններուն, քաղաքական ու եկեղեցական պատմութեան, գիւղերուն եւ քաղաքներուն տեղագրական գիրքին ծանօթ է բծախնդիր մանրամասնութեամբ, առանց երբեք չրջած կամ այցելած ըլլալու, տալով զմայլելի ճշգրտութեամբ անոնց նկարագրութիւնները: Ալիշան դարձած էր իսկապէս խորհրդանիշ մը հայրենիքի գաղափարին, եւ մինչեւ այսօր կը պահէ իր այդ հմայքը:

Վախճանեցաւ 22 Նոյեմբեր 1901ին: Իր մահը ազգային մեծ սուգ մը նկատուեցաւ հայ մամուլին մէջ:

---

## Հ. ՄԱՆՈՒԷԼ ՔԱՋՈՒՆԻ (1823–1903)



Հ. ՄԱՆՈՒԷԼ ՔԱՋՈՒՆԻ

Գիտութեան նուիրուած մեծ Մխիթարեանն է Հ. Մ. Քաջունի, ծնած է Կ. Պոլիս, 9 Օգոստոս 1823ին: Քահանայական ձեռնադրութիւնը առած է 15 Օգոստոս, 1843ին: Կարճ ատեն մը ուսուցչութիւն ընելէ ետքը՝ վանքի եւ Մ. Ռափայէլեան վարժարանի աշակերտներուն, ղրկուած է Պոլիս, ուր վարած է Բերայի եւ Քաղկեդոնի վարժարաններուն տեսչութիւնը եւ միանգամայն Կէօչէեան եւ Տիւզեան գերդաստաններուն ալ դրան երէց ու դաստիարակ եղած է:

Իր գրական գործերուն ուղղութիւնը մէկ է, սէրը գիտութեանց և անոնց մերձեցումը հայ ժողովուրդին: Երկու առաջին գործերը միայն ազգային հնախօսութեան եւ աշխարհագրութեան կը պատկանին. Հնախօսութիւն Հայաստանի (1853) աշխարհաբար, եւ Աշխարհագրութիւն հին եւ նոր Հայաստանի (1857): Գիտական ուղղութեամբ առած է հետեւեալ կարեւոր գործերը. Համարողութիւն (1854), աւանդելով բարձրագոյն թուաբանութեան տարրերը, Բնաբանութիւն կամ Ֆիզիքա (1871), Տարրաբանութիւն (1870) երեք հատորներով, միակ գործը որ գրուած է գրաբար. Մեքենականութիւն (1872), Արուեստաբանութիւն կամ Շտեմարան գիտելեաց (1875), որ ունեցած է յաջորդ տպագրութիւններ 1879ին եւ 1909ին. Մեղուաբուծութիւն (1895) որ յաջորդաբար տպուած է 1919ին. Շերամաբանութիւն (1895), որ ուրիշ տպագրութիւն մ'ալ ունեցած է 1912ին. Տարերք երկրագործութեան (1889), նոր տպագրութեամբ եւս լոյս տեսած՝ 1920ին. Պարտիզպանութիւն (1899), նոյնը յետոյ տպագրուած է 1928ին Բանջարաբանութիւն խորագրով. Պտղաբանութիւն (1899), Կաթնաբանութիւն (1901):

Ինքնագիր գրութիւններէն զատ՝ ունի նաեւ թարգմանութիւնը Պլանշարի Դպրոց բարուց–ին (1860):

Յայտնի կը տեսնուի, որ Հ. Քաջունի իր վերոյիշեալ գիտական գործերով նպատակ ունեցած է ժողովրդականացնելու գի–

ութիւնները եւ անոնց տարածման ճամբան հարթելու, ջանալով հաղորդել եւրոպական զարգացումը իր ազգայիններուն: Գիտական ուղղութեամբ իր ամէնէն մեծ գործն է, սակայն, Բառգիրք արուեստից եւ գիտութեանց (1891–1893), ուր ամփոփած է քառասուն տարիներու ընթացքին ամբարած իր գիտական պաշարը, գործ մը՝ որ իր բառագիտական ճոխութիւն, գիւտ եւ յարմարցում եւ նոյնիսկ գիտական բառակերտութիւն (երբ անոնք պակսած են), այսօր ալ դեռ կը պահէ իր թանկագին արժէքը եւ կը նկատուի աղբիւր՝ նման ուսումնասիրութիւններու:

Իտալական կառավարութենէն ստացած է ասպետական շքանշան մը եւ Միաբանութիւնը՝ իր 1903ի ընդհանուր Ժողովի նիստին, վարձատրելու համար անոր անխոնջ վաստակը, ոչ միայն իբր գիտնական այլ նաեւ իբր մեծ տնտեսագէտ, որով զարգացուցած է վանքին եւ վարժարաններուն մատակարարական կացութիւնը, շնորհած է իրեն «Թաղանդիր աբբայի» տիտղոսը: Նոյն տարին կոչուած է Պոլիս որպէս Գաւառական Ընդհանուր Մեծաւոր. սակայն չկրցաւ երկար ապրիլ եւ վախճանեցաւ անբժշկելի թոքատապով մը՝ 1 Դեկտեմբեր, 1903ին:



Ս. Ղազար. – Հրապարակը

## Հ. ԳԱՐԵԳԻՆ ԶԱՐԲՀԱՆԱԼԵԱՆ (1827–1901)



Հ. ԳԱՐԵԳԻՆ ԶԱՐԲՀԱՆԱԼԵԱՆ

*Համեստ, փառքէ փախչող վանական մը՝ որուն անունը կապուած է հայկական մատենագրութեան մեթոտիկ քննութեան եւ ուսումնասիրութեան հետ։ Ծնած է Կ. Պոլիս, 4 Դեկտեմբեր 1827ին։ Քահանայական ձեռնադրութիւնը առած է 17 Յունուար 1848ին։*

*Կեանքին մեծ մասը անցուցած է Ս. Ղազար, նուիրուած հոգեւոր կեանքի եւ գրականութեան։*

*1858ին անցած է Պոլիս, իր ծննդավայրը, ուր մնացած է մինչեւ 1868, իբր դաստիարակ Մխիթարեան վարժարանին մէջ, և իբր հոգեւոր հայր ժողովուրդին՝ ցոյց տալով խոհական ու զգուշաւոր ընթացք մը իր օրինակելի եւ սրբակեաց վարքով, եւ սիրելի եղած ամէնուն իր բարեհամբոյր ու քաղցր նկարագրով։ Այդ օրերուն Պոլսոյ մէջ յայտնուած ժանտախտին առեն՝ անձնուիրաբար ծառայած է ժողովուրդին, օգտակար ըլլալով կարօտեալներուն, թշուառներուն, սրբելով արցունքներ, մխիթարելով սգաւորներ։*

*Տասը տարի վերջ կը կանչուի վանք. բայց յաջորդ տարին, 1869ին վերստին կը մեկնի Պոլիս, ընկերանալով Գերյծ. Գէորգ Հիւրմիւզեան Աբբահօր, որ կ'երթար եպիսկոպոսական ժողովի մը համար։ Անկից կ'անցնի Հռոմ, ընկերանալով դարձեալ Միաբանութեան Ընդհ. Աբբահօր, Վատիկանեան ժողովի նիստերուն։ 1875ին կը ղրկուի Խրիմ՝ իբրեւ այցելու Մխիթարեան առաքելութիւններուն։*

Վանքին մէջ երկար ժամանակ վարած է քարտուղարի պաշտօնը՝ 1876–1894 տարիներու շրջանին, եւ միաժամանակ աշխատած իր մատենագրական գործերու հրատարակութեան համար: Անձնուէր եւ խոնարհ եղած է միշտ, երբեք չէ ուզած երեւնալ ազգային լրագիրներուն մէջ, հակառակ որ արժանի էր իր ունեցած մեծ վաստակներուն համար: Վախճանած է սուրբ համբաւով վանքին մէջ՝ 13 Փետրուար 1901ին:

Իր հիմնական ուղղութիւնը եղաւ մատենագրական: Պատրաստեց դասագրքեր եւրոպական եւ հայկական գրականութիւններու: Առաջին գործը որ հրապարակ ելաւ՝ է Պատմութիւն մատենագրութեան յունաց եւ հռովմէացւոց (1856), որուն շարունակութիւնն էր յաջորդ հատորը՝ Պատմութիւն մատենագրութեան միջին եւ նոր դարուց յարեւմուտս (1874): Կեդրոնանալով հայկական մատենագրութեան վրայ՝ տուաւ իր շատ կարեւոր գործը՝ Պատմութիւն հայերէն հին եւ նոր դպրութեանց, Դ–ԺԳ դարերու (1865, 1897, 1932), որուն յաջորդեց երկրորդ հատորը՝ Նոր դպրութիւն, ԺԴ–ԺԸ դարերու (1878), որ բ. տպագրութիւն մ'ալ ունեցաւ 1905ին: Յետոյ հրատարակեց Հայկական մատենագիտութիւն 1565–1883 տարիներու (1833), եւ յաջորդաբար Մատենադարան հայկական հին թարգմանութեանց Դ–ԺԳ դարերու (1889), ինչպէս նաեւ Ուսումնասիրութիւնք հայ լեզուի եւ մատենագրութեան յարեւմուտս (1895), ԺԴ–ԺԹ դարերուն ընթացքին երեւցած եւրոպացի հայագէտներու գործերուն քննութեամբ: Մատենագրական վերջին գործը եղաւ Պատմութիւն հայկական տպարանաց եւ տպագրութեանց (1898), գրուած բոլորն ալ ժամանակին աշխարհաբարով եւ գնահատուած իրենց հմտալից պարունակութեան համար, եւ որոնք այսօր ալ դեռ կը պահեն իրենց համեմատական այժմէութիւնը:

Գրած է իբր ինքնագիր գործ՝ Ճառ յաղագս բարեխօսութեան սրբոց (1852), ուր կը խօսի Լութերի եւ Կալվինի վարդապետութեան դէմ, եւ գրքին վերջն ալ աւելցուցած է Վրթանէս քերթողի Յաղագս պատկերամարտաց-ը. գործը երեւցած է Հ. Գ. Զ. Սահակեան ծածկանունով: Յետոյ գրած է հոգեւոր ու կրթական երկու գործեր. Ջերմեռանդութիւն առ Ս. Կոյսն Լուրտի (1899), եւ Մայր, առաջին դաստիարակ մանկութեան (1874), ուր կը յիշեցնէ մօր մը պարտքերը մանուկներու կրթութեան համար:

## Հ․ ՅԱԿՈԲՈՍ ԻՍԱՎԵՐՏԵՆՑ (1835–1920)



Հ․ Յ․ ԻՍԱՎԵՐՏԵՆՑ

*Ծնած է Զմիւռնիա 13 Մարտ 1835ին․ քահանայ ձեռնադրուած՝ 4 Յունիս 1854ին։ Իր դաստիարակներն եղած են Հ․ Բ․ Թրեանց եւ Հ․ Ղ․ Ալիշան, որոնց կրօնաւորական եւ ազգասիրական ոգին մեծապէս ազդած է վրան։*

*Ս․ Ղազար այցելող օտարականներու պաշտօնական հիւրընկալն էր երկար ժամանակ, եւ անոնց հետաքրքրութիւններուն գոհացում տալու համար յօրինած է գրքեր, ծանօթացնելու համար միանգամայն հայ ազգը Եւրոպայի (Բազմավէպ*, 1902, *էջ* 493)։

*Ճամբորդած է մինչեւ Հնդկաստան եւ այս առթիւ գրի առած է իր յուշերը։ Խորապէս հմուտ էր դասական յունարէնի, անգլիերէնի, գաղղիերէնի եւ իտալերէնի։ Իր գործերն եղան պարագայական արտադրութիւններ, ինչպէս* L'Ile St. Lazare et Couvent arménien près de Venise (1879), *իտալերէն–ֆրանսերէն–անգլիերէն եւ գերմաներէն լեզուներով համառօտ նկարագրութիւն մը, տպուած միասին։* Armenia and Armenians (1878), *ուր կը խօսի Հայաստանի աշխարհագրութեան եւ քաղաքական պատմութեան վրայ, ինչպէս նաեւ առանձին պրակներով՝* The armenian ritual (1872), The armenian liturgy (1873), Baptism and confirmation (1873), The ordinal (1875), Rites and ceremonies, *հայ ծիսական գրքերու թարգմանութիւններ։*

*Անգլիերէն լեզուով հրատարակած է նաեւ* The uncanonical writings of the old testament, found in the armenian Mss. (1901, 1907, 1934), *հայ ձեռագիրներու մէջ գտնուած անկանոն գիրքերու թարգմանութիւններ, որոնք մեծ հետաքրքրութիւն արթնցուցին արեւմուտքի եւ Ամերիկայի Ս․ Գրքի մասնագէտներու քով։*

*Հայ ազգայիններու անգլիերէն սորվեցնելու համար գրած է* Քերականութիւն *կամ* Կրթարան անգլիերէն լեզուի (1880–1881), *երկու հատորներով, ճոխ ու գործնական ոճով։*

*Ֆրանսերէն լեզուով գրած է* Histoire de l'Arménie (1888),

պատկերագարդ, երկու հատորով. անկէ առաջ հրատարակած էր Planches de l'histoire de l'Arménie (1885) ալպոմի ձեւով, եւ Les rites et les cérémonies ecclésiastiques des Arméniens (1872).

Աջակցած է Հ. Եղ. Սիրունեանի՝ Հ. Ալիշանի Սիսուանին ֆրանսերէն թարգմանութեան համար, որ լոյս տեսած է 1899ին Sissouan ou l'Arméno-Cilicie խորագրով:

Երիտասարդութեան առեն գրած է միջատներու վրայ գիտական յօդուածներ Բազմավէպի մէջ, յետոյ ամփոփուած հատորով մը: Ունի նաեւ վիպական ձեւով Լճակիս ձկնորսը (1873) համառօտ գիրք մը, Հրդեհ Մխիթարեան վանաց (1884) փոքր տետրակ մը:

Իր արդիւնքն է նաեւ Փ. Պիանքինի՝ իտալացի երաժշտագէտին եւրոպական խաղադրութեամբ եւ Գերպծ. Իգնատիոս Աբրահօր խնամքով հրատարակուած Հայ Պատարագին բնագիրներուն թարգմանութիւնը չորս լեզուներով՝ իտալերէն, ֆրանսերէն, անգլիերէն եւ գերմաներէն:

Պատմական տեսակէտով իր կարեւոր գործն է Ուղեւորութիւն ի Պոմպէյ Հնդկաց (1887), պտուղը իր կատարած ճամբորդութեան. կու տայ հոն հետաքրքրական ոճով նկարագրութիւններ իր ուղեւորութեան եւ տեղական բարքերու:

Վախճանած է 28 Օգոստոս, 1902ին Ազոլոյի մէջ եւ թաղուած հոն:

---

## Հ. ԳՐԻԳՈՐ ՃԵԼԱԼԵԱՆ (1835–1912)



Հ. ԳՐԻԳՈՐ ՃԵԼԱԼԵԱՆ

Ծնած է Կ. Պոլիս, 2 Օգոստ. 1835ին, մտած է Ս. Ղազար 1846ին եւ ձեռնադրուած քահանայ՝ 4 Յունիս 1854ին։

Գրական հակումով եւ միանգամայն վարչական ու տնտեսական ծիրքերով օժտուած անձնաւորութիւն մըն էր։ Իր կեանքին մեծ մասը, սակայն, գրական ուղղութենէ աւելի՝ եղաւ նուիրուած կրթական ու մատակարարական ասպարէզին։ 1860–1864 վարած է վանքին տպարանին տնօրէնութիւնը, 1876–1880 եւ 1885–1891 Մ. Ռափայէլեան վարժարանին տեսչութիւնը, ընծայելով ազգին ուսեալ շրջանաւարտ սաներ։ 1891էն ետքը անցած է Կ. Պոլիս՝ իբր գործակալ Միաբանութեան կալուածներուն, տալով զգալի արդիւնքներ։ Աւելի ուշ, հակառակ յառաջացած տարիքին, ստանձնեց Մ. Ռ. վարժարանի կալուածներուն մատակարարութիւնը։ Շուրջ վաթսուն տարի վարչական ու մատակարարական ասպարէզներուն վրայ սպառելով հանդերձ իր կարողութիւնները, տուաւ ապացոյցը նաեւ իր գրական ձիրքերուն՝ հետեւեալ գործերու մէջ, որոնք ցոյց կու տան հմուտ մարդը պատմական ու մատենագրական ճիւղերու մէջ։ Վիկտոր Ալֆիէրիի վրայ ուսումնասիրութիւն մը (Բազմ. 1855), յետոյ գրաբար քերթուածներ (ինչպէս «Ի վրտակն», Բազմ. 1859, 291, եւ «Առաւօտն գարնանային», 1860, 70)։ Թարգմանած է աշխարհաբար հայերէնով վիպակներ, այսպէս Ծննդեան խթումը (1858), Ժիւլ Սանտոյի Մագդաղինէն (1863), ստեղծելով «Զբօսարան մանկանց» շարքը, Լամէ Ֆլէօրիի Պատմութիւն Անգլիոյ (1862), Փրոսփէր Մերիմէի Աղաւնի–ն (1863), Փ. Գոռնէյլի Նիկոմեդէս ողբերգութիւնը (1902)։

Բայց յիշեալ թարգմանութիւններէն գրած է Լուդովիկոս ԺԶ. (1861), ուր կու տայ գեղեցիկ նկարագրութիւն մը Ֆրանսայի թագաւորին եւ ընտանիքին եղերական մահուան պարագաներուն եւ ժամանակակից դէպքերու։

Իր արդիւնքն է նաեւ Հայկազեան լեզուի առձեռն Բառարանին

*երկրորդ տպագրութիւնը 1865ին, կատարուած շատ խնամքով, սրբագրութիւններով ու յաւելումներով, որով ապացոյցը կու տար իր գրաբարի խոր հմտութեան։ Բայց ինքը, հակառակ գրաբարի տիրապետութեան շրջանի մարդն ըլլալուն, հասկցաւ ժամանակներու պահանջները եւ առեղծեց մղում մը դէպի գրական աշխարհաբարը։*

*Վախճանած է 6 Նոյեմբեր 1912ին, երբ տակաւին տնտեսական գործերու իր փորձառութեամբ կարող էր օգտակար ըլլալ Միաբանութեան։ (Բազմ. 1912, 527)։*

---

## Հ. ՔԵՐՈՎԲԷ ՔՈՒՇՆԵՐԵԱՆ (1841–1891)



Հ. ՔԵՐՈՎԲԷ ՔՈՒՇՆԵՐԵԱՆ

*Խրիմի Մխիթարեան առաքելութեան մէջ՝ յաջորդած է Հ. Մինաս Բըժշկեանին և դարձած ժողովրդական դէմք մը, իր մեծ ազգասիրութեամբ եւ առաքելաջան անձնազոհութեամբ։ Ծնած է Գարասու, 28 Յունուար 1841ին։ Ձեռնադրուած է քահանայ Ս. Ղազարի մէջ, յետ լըրացնելու իր ուսումնական շրջանը, 4 Յունիս 1865ին։ Վախճանած է 9 Յուլիս, 1891ին՝ յիսուն տարեկանին, Ռոստովի մէջ, ուր 25 տարի նուիրուած էր ժողովուրդին ծառայութեան՝ անխոնջ եռանդով։ Արժանացած էր պետական*

ոսկի Խաչի շքանշանին եւ Սարաթովի վիճակաւորէն անուանուած Տաւրիոյ (Խրիմի) Թերակղզիին Նախերէց քահանայ (Բազմ. 1891, էջ 129)։

Հ. Քուչներեան ճանչցուեցաւ որպէս առակագիր. այս գիծով իր գործերն եղան. Առակք կաղանդչէք, երեք մասերով (Ա. 1876, Բ. 1886, Գ. 1904). երրորդ մասը թարգմանութիւններ են գաղղիացի եւ ռուս հեղինակներէ, նաեւ յարասութիւններ Դաւթի սաղմոսներուն։

Գրած է Պատմութիւն գաղթականութեան Խրիմու Հայոց (1895, հրատարակուած յետ մահու), ուր աշխարհաբար հայերէնով կը խօսի Թէոդոսիոյ, եւ Թէոդոսիայէն դէպի Նոր-Նախիջեւան ըրած իր ուղեւորութեան վրայ, տալով տեղագրական օգտակար տեղեկութիւններ։

Թարգմանած է նաեւ Մարգովցեւի Յիշատակարան տպաւորութեանց ճանապարհին յԱյրարատ (1895)։

Քուչներեան, սակայն, իբր առակագիր աւելի ուշադրութիւն գրաւեց, հետք մը թողլով իր մարդասիրական, կրթական, ազգասիրական գաղափարներով եւ դաստիարակիչ խօսքին ազդեցութեամբ։

---

## Հ. ՍԱՄՈՒԷԼ ԳԱՆԹԱՐԵԱՆ (1838–1908)

Պոլսեցի, ծնած 22 Սեպտեմբեր, 1838ին։ Ս. Ղազար կը մտնէ 1850ին եւ քահանայական ձեռնադրութիւնը կ'առնէ 24 Ապրիլ 1859ին, եւ այնուհետեւ կը սկսի իր կրթական եւ դրական գործունէութիւնը։ Կը նշանակուի նախ ուսուցիչ հայերէն, լատիներէն, իտալերէն լեզուներու՝ վանքին աշակերտներուն, ու միաժամանակ օգնական-խմբագիր Բազմավէպի։ Կ'անցնի յետոյ Փարիզ՝ իբր ուսուցիչ, եւ ապա նոյն պաշտօնով Պոլիս։ 1882ին դարձեալ վանքն է եւ տնօրէն տպարանին։ 1891–1895 կը վարէ տեսչու-



Հ. Ս. ԳԱՆԹԱՐԵԱՆ

թիւնը Մուրատ–Ռափայէլեան վարժարանին եւ միանգամայն անդամ է Միաբանութեան վարչական Խորհուրդին: 1896–1899 Հռոմ է, իբր գործակալ եւ ներկայացուցիչ Միաբանութեան՝ Հռոմայ Ս. Գահին առջեւ: 1904ին կը գտնենք զինքը վերստին Պոլիս՝ քարոզչութեան պաշտոնով, եւ ուր կը վայելէ մեծ յարգանք եւ սէր ազգայիններու քով իր ամբասիր վարքին եւ առաքելաջան անձնուիրութեան համար: 1907ին կ'ընտրուի Աթոռակալ Միաբանութեան Ընդհ. Աբբային: Բայց յաջորդ տարին, յանկարծամահ ըլլալով կը վախճանի իր եօթանասուն տարեկանին՝ 25 Հոկտեմբեր, 1908–ին: (Բազմավէպ, 1908, 516):

Հ. Սամուէլ Գանթարեան կը շարունակէ, Բագրատունիի շունչով տակաւին բաբախուն դասական աւանդութիւնը, տալու գրաբարով դասական գործերու հայացումներ, բայց իր բազմազբաղ կեանքը թոյլ չի տար ամբողջապէս նուիրուելու:

Այս ուղղութեամբ նկատի առնուելու են Ալֆոնս Լամարթինի Առաջին մտածութիւնք բանաստեղծականք–ին (1876) թարգմանութիւնը եւ Կլոպշտոկի Մեսիական–ը (1904), այս վերջինը հայկական չափով: Ասոնցմէ դուրս Բազմավէպի մէջ տուած է (1863–1866) եւրոպացի ուրիշ բանաստեղծներէ, ինչպէս Ժիլպէրէն, Ֆոնդանէն եւ Մանծոնիէն քերթուածներ, միշտ գրաբար, «Կայսերեան» ստորագրութեամբ: Հոն երեւցած են նաեւ Լամարթինէն կատարուած ուրիշ թարգմանութիւններ, զոր յետոյ սրբագրուած եւ վերամշակուած՝ առանձին հատորով հրատարակած է վերոյիշեալ թուականին:

Իր աքնաջան աշխատութեան արդիւնք են Գաղղիերէն–Հայերէն–Տաճկերէն (1886) եւ Իտալերէն–Հայերէն (1908) բառարանները: Թարգմանած է ֆրանսերէնի՝ Վիկտոր Լանկլուայի թելադրութեամբ, Ղ. Փարպեցիի Պատմութիւնը: Գրած է աշխարհաբար՝ ազգային վարժարաններու համար Տարերք հռետորական արուեստի (1875), որ այդ օրերուն դեռ կ'աւանդուէր, եւ որ կը պարունակէր գրելու արուեստին ուսուցումն ալ:

## Հ. ԴԱՒԻԹ ՆԱԶԱՐԷԹԵԱՆ (1840–1911)



Հ. Դ. ՆԱԶԱՐԷԹԵԱՆ

Ծնած է Կ. Պոլիս, 2 Ապրիլ 1840ին, եւ քահանայ ձեռնադրուած 17 Յունուար, 1860ին: Իր կեանքին մեծ մասը անցած է ուսուցչական, դաստիարակչական եւ քարոզչական ուղղութեամբ, եւ քիչ առեն ունեցած է գրականութեամբ զբաղելու:

1861–1865 ունեցած է նախ պաշտօններ վանքին մէջ՝ ուսուցչի եւ օգնականվերակացուի. 1865–1869ին եղած է Ռափայէլեան վարժարանին մէջ ուսուցիչ եւ ուսումնապետ: 1869–1879ին, տասնեակ մը տարի, վարեց վանքի աշակերտներու դաստիարակութեան փափուկ գործը, իսկ 1880–1885 Մ. Ռափայէլեան վարժարանի տեսչութիւնը: 1886–1891 Կ. Պոլիս է, իբր ժողովրդապետ Սամաթիոյ, հոգեւոր–տեսուչ եւ ուսուցիչ Համազգեաց Օրիորդաց վարժարանին եւ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Ուսումնարանին հայկաբանութեան ուսուցիչ, եւ միանգամայն խմբագրապետ «Պատկեր» թերթին եւ անդամ Կ. Պատրիարքարանի զանազան ժողովներուն: 1892–1899 վարեց Բերայի Մխիթարեան վարժարանին տեսչութիւնը:

Կանչուելով Վենետիկ, յանձնուեցաւ իրեն 1899–1901 Փատուայի համալսարանական Հայ ուսանողներու խնամակալի պաշտօնը, բայց երեք տարի ետքը՝ ընտրուելով ժողովրդապետ Հայ կաթողիկէ համայնքին եւ «մուրախխաս» Նիկոմիդիոյ եւ շրջակայքի՝ դարձաւ արեւելք: 1903ին կոչուեցաւ վերստին Ս. Ղազար, ուր ստանձնեց խորհրդականի պաշտօնը՝ մաս կազմելով Միաբանութեան վարչական Մարմնոյն: 1909ին կրկին ընտրուեցաւ խորհրդական եւ միանգամայն ընդհ. Աթոռակալ Միաբանութեան:

Շնչափողի բորբոքման հետեւանքով կարճատեւ հիւանդութեան շրջան մը անցընելէ ետքը՝ վախճանեցաւ եօթանասունեւմէկ տարեկանին՝ 17 Յունուար 1911ին:

Իր գործերը եղան նախ գրաբար թարգմանութիւններ իր օրերու բանաստեղծներէն: Յետոյ առանձին հատորով լոյս տեսան Կեսար Քանդուի Առաքինի ու քաղաքակիրթ պատանի (1861),

Բիչչիալա (1865), *վէպ Սէնդինի, թարգմանուած երկուքն ալ աշխարհաբար*։ Հատընտիր քերթուածք յաստուածային տեսլաբանէն (1875), *այսինքն Տանթէի Աստուածային կատակերգութենէն ընտրուած էջեր, թարգմանուած գրաբար եւ իբր ճաշակ՝ մաս մ'ալ հրատարակուած Բազմավէպի մէջ* (1875, 149)։ Առձեռն տրնտեսագիտութիւն (1879), *աշխարհաբար*։ Քերթուած ծառոյ (1869) *Տը Լաբրատի, թարգմանուած գրաբար եւ յանգաւոր*· Առակք մըրցանակ (1882, 1893) *խորագրով ծանօթ առակներու հաւաքածոյին մէջ (թարգմանութիւններ զանազան անձերու), ինքն ալ մասնակցած է քանի մը կտորներով· հրատարակիչն է Հ· Ա· Տիրոյեան*։ Ս· Կոյսն հին եւ նոր Կտակարանաց մէջ (1905) *աշխարհաբար՝ երկու հատորով, գործ՝ Սէկիւր քահանային*։ Մրմունջք շնորհակալեաց առ Տիրամայր ամենասուրբ Կոյսն (1910), *համառօտ տետրակ մը՝ ուր ամփոփած է իր ինքնագիր եւ թարգմանածոյ երգերը, նուիրուած Ս· Կոյսին*· Խոկմունք վասն ամսօրեայ աւուրց ի պէտս քահանայից (1906)։

*Իր հիմնական եւ նշանակելի գործը կրնայ համարուիլ Տանթէի եռամասնեայ «Աստուածային կատակերգութեան» (Դժոխք – Քաւարան – Արքայութիւն) գործին ամբողջական թարգմանութիւնը, որմէ քանի մը հատուածներ միայն հրատարակուած են վերոյիշեալ* Հատընտիրքին *մէջ*։

---

## Հ. ԱՐՍԷՆ ՍՈՒՔՐԻ (1851–1882)



Հ. ԱՐՍԷՆ ՍՈՒՔՐԻ

Հ. Ա. Սուքրեան կամ Սուքրի՝ նոր ժամանակներու հայ բանասիրութեան նշանաւոր դէմք մըն է, որ ծրագրած էր Նախնեաց մատենագրութեան ինքնագիր եւ կամ թարգմանածոյ բոլոր գործերուն նոր հրատարակութիւն մը, քննական ոճով: Ինքն է հիմնադիրը հայկական բանասիրութեան, բերելով նոր ուղղութիւն, նոր լոյս եւ տալով մեծ մղում մը ազգային մատենագրութեան քննական ուսումնասիրութիւններուն, բայց իր կանխահաս մահը խափանեց իրագործումը իր բոլոր ծրագիրներուն:

Ծնած է Կ. Պոլիս՝ 6 Սեպտեմբեր, 1851ին. քահանայ ձեռնադրուած է 24 Օգոստոս, 1873ին: Ինքնամփոփ, խոհական ու ծանր նկարագրով, ուսումնական մարդ եւ անյարմար արտաքին գործառնութիւններու, նուիրուեցաւ լուրջ պատրաստութեամբ մը բանասիրական գործերու, այն քանի մը տարիներու շրջանին (1873–1882), երբ հայերէնի եւ գրականութեանց ուսուցչութիւն ընելով հանդերձ՝ Ս. Ղազարի վանական աշակերտներուն, կը հրատարակէր գործեր, որոնք թէեւ քիչ են իբր քանակ, բայց՝ բարձր իբրեւ որակ, ու կը բաւեն անմահացնելու իր անունը: Օժտուած էր բազմակողմանի կարողութեամբ՝ բանասէրի, թարգմանիչի և էր գրական կիրթ եւ ընտիր ճաշակի տէր գրագէտ մը:

Հայերէն լեզուի «Նոր Բառգրատունի» մը կար իր մէջ, ինչպէս ցոյց կու տան իր թարգմանութիւնները: Դասական լեզուներէն կը ճանչնար խորապէս՝ լատիներէնը, եւ մանաւանդ յունարէնը,

զոր զարգացուցած էր Ս. Ղազարի մէջ։ Արդէն ծանօթ էր նոր յունարէնի՝ մայրենի լեզուին պէս, յոյն դայեակ մը ունեցած ըլլալով մանկութեան, ինչպէս Բագրատունին։ Եւրոպական լեզուներէն զատ (իտալերէն, Ֆրանսերէն, անգլիերէն, գերմաներէն) գիտէր նաեւ ասորերէն եւ եբրայեցերէն, եւ հետամուտ էր սորվելու արաբերէնն ու պարսկերէնը, որոնք մեծապէս պիտի նպաստէին իր բանասիրական պրպտումներուն։

Իր տքնաջան աշխատութիւնները վնասեցին, սակայն, իր առողջութեան, որ ի բնէ տկարակազմ՝ սկսաւ նշաններ տալ հիւանդութեան։ 1878ին ղրկուեցաւ Մինիխ՝ ուր, բացի գերմաներէն լեզուն զարգացնելէ, օդի փոփոխութեամբ պիտի կազդուրուէր, բայց անօգուտ։ Տարի մը ետքը, 1879ին, մեկնեցաւ Պոլիս՝ ուր ծննդավայրի կլիմային տակ, կը կարծուէր որ ան վերագտնէր իր խախտուած առողջութիւնը։ Թէեւ սկիզբը յոյսեր տուաւ առողջանալու, սակայն չբուժուեցաւ իր ներսը դարանած անողոք եւ անծանօթ հիւանդութենէն եւ վախճանեցաւ 7 Օգոստոս 1882ին։

Գործերը եղան. շարք մը բանասիրական յօդուածներ, որոնք լոյս տեսան «Բազմավէպ»ի մէջ 1873–1881 տարիներուն, ինչպէս Ս. Բարսեղ եւ իր երկասիրութիւնք (1873, 112), Մեսրոպեան դար հայկական լեզուի (անդ, 1875, 7), Հելլենաբանութիւն եւ հելլենաբան թարգմանիչք հայկական լեզուի (1875, 118), Հայ վանորէից ուսմունքն եւ ջանքն – Յոյն եւ արաբացի թարգմանութիւնք եւ լեզու ԺԱ եւ ԺԲ դարերու (անդ, 1875, 218), Ընդհանուր տեսութիւն մը Նախնեաց թարգմանութեանց վրայ դատաստան ընելու (1875, 352), Հոմերական բառգիրք եւ հոմերական տաղք (անդ, 1877, 15), Սկիզբն հայկական լեզուի եւ Դիոնեսիոս Թրակացւոյ քերականութիւնն (անդ, 1877, 97), Աստուածաշունչ· թարգմանութիւն Եօթանասնից եւ հայկականն (անդ, 1877, 200), Մեծն Ս. Ներսէս պարթեւ (անդ, 1877, 319), Երեսնամեայ պատերազմ ի Հայս եւ կատարած Արշակայ արքային (1878, 7), Բանք Պտղոմեայ եւ Ստրաբոնի աշխարհագրաց վասն Հայաստանի (անդ, 1879, 3), Նեմեսիոսի մարդակազմութեան գրոց եւ անոր հայ թարգմանութեան վրայ ճաշակ մը (անդ, 1880, 326), Պատմութիւն հայ բժշկութեան (անդ, 1881, 33)։ Այս շատ շահեկան յօդուածաշարքին միայն նախաբանն էր, որ 1881ին լոյս տեսաւ Բազմավէպի մէջ. գրուածքին շարունակութիւնը, որ մնացած էր իր քովը՝ Պոլիս,

անհետ կորսուած է այժմ։ Աշխարհագրութիւն Մ. Խորենացւոյ
բաղդատեալ ընդ Պտղոմեայ (1881, 341)։

Իր լուրջ եւ հմուտ բանասէրի համբաւը արդէն սկսած էր տա-
րածուիլ ոչ միայն ազգայիններու, այլ նաեւ Եւրոպայի հայագէտ-
ներու քով։ Գերմանացի հայագէտն Հիւբշման՝ հայերէնի դասեր
առած է իրմէ։

Դասական թարգմանիչ մը կար իր մէջ, որ յայտնուեցաւ նախ՝
Եսքիւղէսի Պրոմեթեւս կալանաւոր-ի թարգմանութեամբ (Բազմ.
1877, 256), յետոյ Թէոկրիտէսի հովուական բանաստեղծութիւն-
ներուն, զորս ինքը Գեղօնք կոչած է (Բազմ. 1877, 132, 253).
թարգմանած է նաեւ հատուած մը Եւրիպիդէսի Մահ Իպպոլի-
տեայ ողբերգութենէն (անդ, 1880, 139), եւ Աղերսաւորք-ը ամ-
բողջապէս (Բազմ. 1880, 261. 1882, 76, 155) եւ որ յետոյ առան-
ձին հատորով ալ լոյս տեսած է։

Նախնեաց գործերէն հրատարակած է քննական ուսումնասի-
րութեամբ՝ Պղատոնի Եւթիփռոն, Սոկրատայ պատասխանի, եւ
Տիմէոս տրամախօսութիւնները՝ 1887ին։

Սուքրիի մահը մեծ կորուստ մը եղած է Միաբանութեան եւ
ընդհանուր հայագիտութեան. իր հետ գերեզման իջան դժբախ-
տաբար գեղեցիկ եւ օգտակար ծրագիրներ, որոնցմէ է՝ Հայկա-
կան Հանրագիտակ մը, եւ Նոր Հայկազեան բառարանի վերատես-
ուած եւ ճոխացուած հրատարակութիւն մը, որոնց համար հա-
ւաքած էր անթիւ ատաղձ եւ կատարած մասնական քննութիւններ
ու ճշտումներ։

## Հ. ԲԱՐՍԵՂ ՍԱՐԳԻՍԵԱՆ (1852–1921)



Հ. ԲԱՐՍԵՂ ՍԱՐԳԻՍԵԱՆ

*Ծնած է Թեփեղէօլէկ՝* 1 *Յունիս* 1852*ին. քահանայ ձեռնադրըուած է* 21 *Սեպտեմբեր*, 1878*ին: Իր կեանքը, գրեթէ ամբողջապէս, անցած է Ս. Ղազար, նուիրուած վանական կեանքի եւ գրաւորական աշխատանքներու: Կրած է ազդեցութիւնը Հ. Ա. Սուքրիին, որուն թէեւ հզօր կարողութիւնը չունէր, սակայն մօտեցած է մեծ հմտութեամբ բանասիրական շատ մը հարցերու, գլխաւորապէս մատենագրական գծով:*

*Իր առաջին յօդուածաշարքը եղած է Բազմավէպի մէջ* Հայ ազգն եւ իւր առ մարդկութիւն բրած օգուտները (1881–1883), *ուր պատմութեան զանազան շրջանները քննութեան առնելով՝ ցոյց կու տայ Հայաստանի եւ իր ժողովուրդին պատմական ու մշակութային մարզին մէջ բերած օգտակարութիւնը: Երկրորդ յօդուածաշարքը եղած է* Տեսութիւն Մարիքասեան աւանդութեան ըստ Մ. Խորենացւոյ (*Բազմ.* 1883–1885), Տեսութիւն տառադարձութեան խնդրոյն եւ հայերէն նշանագրոց վրայ (*Բազմ.* 1889, 21, 97, 129, 161): *Այս երեք գործերը լոյս տեսած չեն առանձին հատորներով:*

*Հրատարակած է յաջորդաբար* Ագաթանգեղոս եւ իւր բազմադարեան գաղտնիքը (1890), Տեսութիւն Սեղբեստրոսի պատմութեան եւ Մ. Խորենացւոյ աղբերաց (1893), Ուսումնասիրութիւն Մանիքէա-Պաւղիկեան Թոնրակեցիներու աղանդին եւ Գր. Նարեկացւոյ թուղթը (1893), Քննադատութիւն Յ. Մանդակունւոյ եւ իւր երկասիրութեանց վրայ (1895), Ուսումնասիրութիւն հին Կտակարանի անվաւեր գրոց վրայ (1898), Մխիթարեան Միաբանութեան երկհարիւրամեայ գրական գործունէութիւնը (1905), Երեք թագաւոր մոգերու զրոյցը հայկ. մատենագրութեան մէջ (1910), Վիճակագրական տեսութիւն մը (1919), *յետոյ երկու կենսագրական գրքեր՝* Սեպուհ Լազ Մինասեան (1904), *եւ* Ազգաբանու–

թիւն Ալլահվերտեան տոհմին (1909), *եւ ապա գրական-իմաստասիրական խորհրդածութեան փորձ մը՝* Ցափշտակութիւն հանդէպ ծովալճին Մօտա-Պուռնուի (1892):

*Իր մեծագոյն աշխատութիւնն է* Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, *Ա. հատորը* (1914), *իսկ երկրորդ հատորը՝ յետ մահու* (1924): *Ցուցակագրական իր ծրագիրը մահուան պատճառով կիսատ մնացած է եւ շարունակուած ուրիշներէ: Նոյնպէս յետ մահու հրատարակութիւն մըն է* Երկհարիւրամեայ կրթական գործունէութիւնը Վենետկոյ Մխիթարեան Միաբանութեան (1936):

*Բացի այս ինքնագիր աշխատանքներէն, հրատարակած է Նախնեաց գործերէն՝* Անանուն Ժամանակագրութիւնը (1904), *որ խմբագրութիւն մըն է, կատարուած Է. դարուն.* Անանիա Թարգմանիչ եւ իր գրական գործոց նմոյշներ (1899), Ճառք Եղիշէի եւ Զաքարիա կաթուղիկոսի ի թաղումն Քրիստոսի (1910), Ս. Եւագր պոնտացի (1907), *ընդարձակ ներածութեամբ՝ ուր հայրախօսական խոր հմտութիւն ցոյց կու տայ, խօսելով Եւագրի ընծայուած գործերու մասին, կը քննէ հայ Թարգմանութեան լեզուն եւ ժամանակը.* Վարդան Անեցիի Վասն կառաց աստուածութեան (1919) *եւ* Վկայաբանութիւն Ս. Յովսեփոսի (1919):

*Վախճանած է Վենետկոյ հիւանդանոցին մէջ՝ անակնկալ թոքատապի մը հետեւանքով,* 21 *Օգոստոս,* 1921*ին:*

---

## Հ. ԱԹԱՆԱՍ ՏԻՐՈՅԵԱՆ (1857–1926)



Հ. Ա. ՏԻՐՈՅԵԱՆ

Ծնած է Կարին, 22 Յունուար 1857ին։ Մտած է Ս. Ղազար՝ 11 Սեպտեմբեր 1869ին։ Աշակերտած է Հ. Գ. Նազարէթեանին։ Քահանայ ձեռնադրուած է 25 Դեկտեմբեր, 1878ին։

Մտաւորական մը՝ գրական ու բանասիրական շեշտուած կարողութեամբ, որ կրած է ազդեցութիւնը Հ. Ա. Սուքրիին, որուն մահուան առթիւ հրատարակած է գրաբար եղերերգ մը (Բազմ. 1882, էջ 195)։ Գրական կեանքի սկզբնաւորութեան՝ դիտելի են իր մէջ երկու յայտնի ուղղութիւններ, մին դասական մարդու, որ կ'ապրի դեռ Բագրատունիի եւ Հիւրմիւզի դպրոցին տպաւորութիւններուն տակ, եւ բանասէրի՝ ուշիմ, սրամիտ, համայնագիտական տարողութեամբ· շօշափած է գրեթէ ամէն նիւթ, որ իրեն կը թելադրէր ժամանակը եւ կեանքի պահանջներն ու զարգացումները։

Գրքի եւ մտաւորական աշխատանքի նուիրուած այս վարդապետը, ունեցած է նաեւ ուսուցչական, քարոզչական, տնտեսական գործունէութիւն մը եւ գացած է զանազան պաշտօններով՝ Պարսկաստան, Թուրքիա եւ Հունգարիա։ Սակայն գիտցած է օգտագործել իր ժամանակը, տալով բազմադիմի գործեր, ինքնագիր եւ թարգմանածոյ, մին միւսէն տարբեր ուղղութեան պատկանող եւ այլազան նկարագրով։

Իր գրական սկզբնաւորութիւնը եղած է դասական թարգմանութիւններով, ինչպէս իր շրջանին գրեթէ բոլոր Մխիթարեաններունը։ Թարգմանած է գրաբար եւ հայկական չափով՝ Վ. Մոնթիի Կայիոս Գրակխոս-ը (Բազմ. 1887, 41, 222· 1888, 254, 384· 1889, 271)։ Հրատարակած է Վարժութիւն գաղղիերէն լեզուի (1879), Սղագրութիւն հայկական (1888), եւ աւելի ուշ՝ Հանրագրութիւն, ուր թուանշաններով կ'ուզէ ստեղծել միջազգային լեզու մը· գիտաւոր ձեռնարկ՝ որ այսօր սքանչացումի կ'արժանանայ նման փորձերու հետամուտ գիտնականներէն։ Թարգմանած

է Վիլհէմ համառօտ վէպ մը, որ նիւթը կ'առնէ Սպանիոյ Փիլիպ-պոս Բ. Թագաւորին ժամանակակից դէպքերէն. Վլաս Կառնիացի կամ անզգամ մանկապանը (1891), ԺԶ. դարու վէնետկեան կեան-քէն՝ գործ Ռ. Ռուչչելլինիի:

Ստեղծած է Գրադարան թատերգական շարքը, որուն մաս-նակցած են նաեւ ուրիշներ ալ, ինքնագիր եւ թարգմանածոյ թա-տերական կտորներով, ընդհանրապէս զաւեշտ, տրամ, մերթ ընդ-հանուր կամ մարդկային եւ մերթ ալ ազգային կեանքէ առնուած: Իր ինքնագիր թատերական կտորներն են՝ Խաղամոլը (1895, 1906). Վարդագոյն նամակ (1897, 1908), Երկու ծայրայեղները (1906, 1932), Երեք քաջերը (1906, 1932), Երկու հրացանակիրները (1907), Սանդուխտ համբերատար (1909), Նեկտանիբէ (1909), Ապու Գասըմի հողաթափները (1926): Թարգմանութիւններ են՝ Ս. Դոմինիկ կղզւոյն գերին (1905), Գողցուած սագը (1906, 1932). Սիմոն տասնապետը (1908), Որդիական սէր (1908):

Քերականական գործեր են. Grammatica della lingua armena classica (1902), եւ Grammatica della lingua armena moderna (1902), իտալացիներուն հայերէն սորվեցնելու համար: Մահէն ետքը իր եղբօր Հ. Յակոբի ձեռքով հրատարակուեցաւ Քերականութիւն հայերէն աշխարհաբար լեզուի (1930), բարձրագոյն ընթացքի համար պատրաստուած:

Յետոյ ունի Արուեստ տաղաչափութեան (1913), Առակք մըրցանակ (1882, 1893), ուր ամփոփուած են զանազան առակագիրներու գործերը: Իբր հոգեշահ մատեան թարգմանած է Զբօսարան Մայիսի կամ Վարք Ս. Կուսին (1924) Տ. Փրանկլիսկոս Մարտինենգոյի, եւ Հաւատով խոստովանիմ (1923, 1934) աշխարհաբար ոտանաւորի վերածուած, դէմը ունենալով գրաբար բնագիրը:

Գեղարուեստական կարգ մը թարգմանութիւններու փորձեր ալ ըրած է. այսպէս Ազատումն Երուսաղէմի (1912), Թասսոյի դիւցազներգական գործին, հայկական չափով եւ աշխարհաբար, հետեւելու համար իր ժամանակի հոսանքին. Հրատարակուած է պատկերազարդ ու մեծադիր ձեւով: Ընտրուած լայնաշունչ չափը պատճառ կ'ըլլայ յաճախ բնագրին միտքը ընդլայնելու ի վնաս հաւատարմութեան: Տանթէի աստուածային կատակերգութենէն թարգմանած է միայն Գ. մասը, Արքայութիւնը (1930, հրատարակուած յետ մահու), ուր սակայն մետասանոտեանին ուղիղ գործածութենէն կը հեռանայ, խառնելով զայն

մերթ լիննոտեանի եւ մերթ տասնոտեանի հետ, խուսափելու համար, այս անգամ, բնագրի տողերուն վրայ յաւելումներ ընելէ: Հոս, իր տաղաչափութիւնը խիստ օրէնքներու չի հպատակիր:

Հրատարակչական ասպարէզին մէջ՝ Հ. Ա. Տիրոյեան տուած է հետեւեալ օգտակար ծառայութիւնները՝ լոյս ընծայելով Ջուանշէրի Համառօտ պատմութիւն Վրաց (1884), Ղունկիանոս Կարնեցի՝ ԺԸ. դարու երգիչին Քերթուածք-ը (1886): Հմուտ լատիներէնի եւ յունարէնի՝ տուաւ յաջորդաբար աւելի կարեւոր հրատարակութիւններ՝ որոնցմէ է Նեմեսիոս Եմեսացի փիլիսոփային Յաղագս բնութեան մարդոյ (1889) գործին հայերէն հին թարգմանութիւնը, հանդերձ ներածութեամբ եւ քննական ծանօթագրութիւններով: Աւելի խնամքով եւ յոյն բնագրին հետ միասին հրատարակեց Գէորգ Պիսիդէսի Վեցօրեայք-ը կամ Աշխարհակազմութիւն-ը (1900), հայ թարգմանութիւնը համեմատելով յունական բնագրին եւ այլ թարգմանութիւններու հետ, եւ լրացնելով միանգամայն հայ թարգմանութեան պակասները:

Թուականով աւելի առաջ է հրատարակութիւնը Յ. Ոսկեբերանի Մեկնութիւն Եսայեայ Մարգարէի (1880), որուն յոյն բնագիրը գրեթէ մեծ մասով կորսուած է, մինչդեռ ամբողջութեամբ պահուած հայ թարգմանութեան մէջ: Նոյնին լատիներէն թարգմանութիւնը հրատարակած է յետոյ 1887ին: Յ. Ոսկեբերանէն հրատարակած է նաև Ներբողեան ի Ս. Գրիգոր Լուսաւորիչ (1878), հանդերձ լատին թարգմանութեամբ. նմանապէս Տարականք եւ երգք ժամակարգութեան Հայաստանեայց եկեղեցւոյ առ Ս. Կոյսն (1877), հայերէն բնագրին հանդէպ դնելով լատին թարգմանութիւնը: Իտալերէն լեզուով հրատարակած է Ս. Գր. Նարեկացիի «Գումարք խմբից»-ը Discorso panegirico alla Beatissima Vergine Maria խորագրով (1904):

Հ. Ա. Տիրոյեան եռանդ ու խանդավառութիւն ստեղծող անհատականութիւն մըն էր, ձեռնարկող ոգի մը, օժտուած դիւտաւոր մտքով եւ աննկուն կամքով: Վախճանած է Ս. Ղազար, 1 Սեպտեմբեր 1926ին, երբ տակաւին կրնար ուրիշ արտադրութիւններով օժտել Մխիթարեան գրականութիւնը:

## Հ․ ԱՐԻՍՏԱԿԷՍ ՔԱՍԳԱՆՏԻԼԵԱՆ (1853–1942)



Հ․ Ա․ ՔԱՍԳԱՆՏԻԼԵԱՆ

*Հայր Արիստակէս Քասգանտիլեան, գրական շեշտուած հակումներով, եղած է նախ թարգմանիչ մը դասական հայերէնով, հմայուած Բագրատունիի հըզօր շեշտէն եւ լեզուին վսեմութենէն։ Ծնած է Տրապիզոն՝* 8 *Յունիս,* 1853*ին։ Սուրբ Ղազար եկած է* 1864*ին եւ ձեռնադրուած քահանայ՝* 24 *Մայիս,* 1874*ին։ Աշակերտած է Հ. Աբրահամ Ճարեանին, որուն գրական հմտութիւնը ազդած է վրան։*

*Իր գործունէութիւնը եղած է հիմնապէս դաստիարակչական, վարելով ուսուցչի եւ տեսչի պաշտօններ՝ Տրապիզոնի, Կ. Պոլսոյ եւ Վենետիկոյ Մուրատ-Ռափայէլեան վարժարաններուն մէջ։ Բայց ունեցած է գրական արժանիքներ ալ։ Իր սկզբնաւորութիւնը, ինչպէս ըսինք, ըրած է գրաբար թարգմանութիւններով՝ Շէքսպիրի* Մակբեթ*–ին (Բազմ.* 1877–1878), *Մանծոնիի* Ատելֆի *ողբերգութեան (անդ,* 1877), *եւ ուրիշ կտորներ դասական գրականութիւններէն։*

*Ինչպէս Հ. Գր. Ճէլալեան, ինք ալ զգաց որ ժամանակները կը քալէին դէպի աշխարհաբարի յաղթանակը։ Թարգմանեց, հետեւաբար, աշխարհաբար հայերէնով՝ Ատա Նեգրիի* բանաստեղծութիւնները, *Ճ. Ճիաքոզայի* Ինչպէս տերեւները (1901), *Տէ Ամիչիսի* Ճառեր տղաքներու համար (1899), *եւ քանի մը թատերական խաղեր դպրոցական ներկայացումներու համար, այսպէս* Անձրեւոտ գիշեր մը, Պղուտոնի նաւաբեկեալները, Որդին հօրը բանտապան, *եւն.։*

*Իր մեծ արժանիքն է Դ. Վարուժանի մէջ բանաստեղծին յայտնութիւնը եւ խնամքը անոր ձեւաւորման։ Յ. Ճ. Սիրունի արդարօրէն կը շեշտէ անոր արդիւնքը՝ գրելով. «Բանաստեղծը (Դանիէլ Վարուժանի մէջ) պիտի չհասուննար թերեւս այնքան արագ եւ այնքան յուռթի՝ եթէ դիպուածը իր դէմը չհանէր Մխիթարայ Տան ամէնէն համեստ, բայց ամէնէն անոյշ հոգիներէն մէկը, Հ. Ա. Քասգանտիլեանը, որ նոյն միջոցին մեծաւոր էր Գատըգիւղի*

Մխիթարեան դպրոցին»։ Ու Վարուժան ինքը, վերյիշելով իր դաստիարակը, անհուն երախտագիտութեամբ կ'արտայայտուի, խոստովանելով թէ անոր կը պարտի իր հոգիին մէջ ծնած սէրը դէպի գեղեցիկը, ինչպէս նաեւ իր բանաստեղծի կոչումը եւ տիրապետութիւնը հայերէնի բազմաճոխ գանձերուն (Բազմ. 1924, 218. 1942, 90)։

Հ. Ա. Քասգանտիլեան, ինչպէս կը սիրէր մանուկները՝ անխոնջ նուիրուած անոնց դաստիարակութեան, նոյնպէս բնածին սէր մը ունէր ծաղիկներուն հանդէպ, զորս իր ձեռքով կը խնամէր, պատրաստելով ածուները եւ գեղազարդելով վանքին մուտքը ու պարտէզները՝ իր ծերութեան տարիներուն։ Ծաղկազարմանութեան սէրը, կ'ըսէր ան, ժառանգած էր Հ. Աբրահամ Ճարեանէն։

Վախճանած է Ս. Ղազար, 19 Յունուար 1942ին։

---

## Հ. ՄԻՆԱՍ ՆՈՒՐԻԽԱՆ (1854–1929)



Հ. Մ. ՆՈՒՐԻԽԱՆ

Ծնած է Տրապիզոն, 28 Յունուար 1854ին։ Շատ կանուխէն կը կորսնցնէ իր ծնողքը, զոհ գացած համաճարակ հիւանդութեան մը։ Տասը տարեկան մանուկը, արդէն ծնողներէն նուիրուած Աստուծոյ (յետ իր մօրեղբօրը Հ. Մինաս Բժշկեանի մահուան, եւ որուն անունով ալ արդէն կնքուած էր) փափաք կը յայտնէ հետեւելու իր մօրեղբօրը կեանքին եւ կը հասնի Ս. Ղազար իր ընկերոջ Սեդրաքի (ապագայ Հ. Արիստակէս Քասգանտիլեան) հետ 1864ին։ Յետ աւարտելու իր բոլոր հայագիտական եւ սրբազան ու-

ումները, կը ձեռնադրուի քահանայ 24 Օգոստոս, 1873ին: Քանի մը տարի ուսուցչութիւն կ'ընէ Ս. Ղազարի աշակերտներուն եւ Մ. Ռ. վարժարանի սաներուն, որոնց նաեւ ուսումնապետ կը կարգուի Գերպ. Իգնատիոս Կիւրեղեանի տեսչութեան ժամանակ:

Հաստուն, խոհեմ եւ գործունեայ անձ մըն էր Հ. Մինաս Նուրիխան: 1882ին ստանալով վարդապետական գաւազանը՝ կը ղրկուի Տրապիզոն, վերահաստատելու համար հոն՝ 1850էն ի վեր փակ մնացած Մխիթարեան վարժարանը: Երկու տարի վերջ արդէն իր վարած վարժարանը կը հասնի երկրորդական ուսմանց ծրագրի աստիճանին եւ կը վայելէ սէր ու համակրութիւն: Իր արդիւնքը կ'ըլլայ նաեւ, 1886ին Պօղոս Եպս. Մարմարեանի կողմէն հաստատուած «Վերափոխման կուսաններու» միաբանութեան ներքին կազմակերպութիւնը, յօրինելով անոնց Սահմանադրութիւնը՝ եւրոպական կուսաններու կանոնագրքին վրայ: Անոնք իրենց վարժարաններով եւ այլ գործունէութեամբ մեծապէս օգտակար ըլլալ սկսած էին Թեմի շրջանակին մէջ, երբ 1914ի մեծ աղէտը եկաւ ցնցելու զանոնք ալ եւ բոլորովին բնաջնջելու:

Հ. Մինաս Նուրիխան կը մնայ Տրապիզոն մինչեւ 1894: Նոյն տարին գումարուելով Միաբանութեան Ընդհ. Ժողովը, ան կ'ընտրուի ընդհ. առաջիկայ եւ կը ստիպուի մնալ Վենետիկ, ստանձնելով միանգամայն Մ.-Ռափայէլեան վարժարանի տեսչութիւնը եւ վանքի Ուսումնական Ժողովի նախագահութիւնը:

Հ. Ալիշանի մահէն ետքը, 1902ին, յաջորդ Ընդհ. Ժողովին կ'ընտրուի Ընդհ. Աթոռակալ Կիւրեղեան Աբբահօր մինչեւ 1907: 1903ին իրեն կը յանձնուի նաեւ Մխիթար Աբբահօր Սրբացուցման Դատին Աղերսարկուի փափուկ պաշտօնը, զոր կը վարէ մինչեւ կեանքին վերջը: 1920ին անգամ մ'ալ ընտրուած է ընդհ. առաջիկայ Միաբանութեան: Վախճանած է Փատուայի մէջ, 7 Յունիս 1929ին:

Գրական գործունէութիւնը կը կայանայ գլխաւորապէս պատմական գործերու մէջ: Ան ալ, սակայն, իր սկզբնական շրջանին, ուրիշներու պէս տուած էր ինքզինքը դասական գրականութեան, գրաբար ոտանաւորներով եւ թարգմանութիւններով: 1882ին Հ. Արսէն Սուքրիի (իր դասընկերը) անակնկալ ու տխուր վախճանին առթիւ, գրած է յուզուած եւ զգայուն եղերերգութիւն մը, հրատարակուած նոյն Տարւոյ «Բազմավէպ»ին մէջ: Այնուհետեւ գրած է Գուրգէն եւ Դերենիկ (1879), Թէոդոր Սալիունի (1882),

գրաբար ողբերգութիւնները՝ ազդեցութեան տակ Հ. Պետրոս Մինասեանի: Թէոդոր Սալխունիի աշխարհաբար վերածում մըն ալ ըրած է 1902ին:

Իր գլխաւոր աշխատանքը եղած է ամփոփումը ժամանակակից քաղաքական պատմութեան ամբողջական համապատկերին, օգտուելով օրուան թերթերէն ու մամուլէն եւ քննադատներու տեսութիւններէն: Իր այս Պատմութիւն ժամանակակից-ը լոյս տեսած է երեք հատորներով. Ա.ը կ՚ամփոփէ 1814–1848 տարիներու դէպքերը (տպ. 1881), Բ.ը՝ 1848–1867ի դէպքերը (տպ. 1896): Սոյն Բ. հատորը ունեցած է 1915ին երկրորդ տպագրութիւն մ՚ալ, բարեփոխուած եւ ճոխացած: Գ.ը՝ որ կ՚ամփոփէ 1868–1878 տարիներու դէպքերը (տպ. 1907), կ՚ամբողջացնէ իր մտադրած ծրագիրը: Անշուշտ քննական ըլլալէ աւելի, տաք ու արդիական ոճով պատմում մըն է իր օրերուն ժամանակակից պատմութեան անցուդարձերուն, որոնց ականջալուր եւ ականատես է: Ունի նաեւ Ժամանակագրութիւն քաղաքական 1898 ամին (տպ. 1898):

Իբր աղերսարկու Մխիթար Աբբահօր Սրբացուցման Դատին, հրատարակած է Մխիթար Աբբահօր ընդարձակ վարքը, երեք լեզուներով՝ իտալերէն, ֆրանսերէն եւ անգլիերէն:

Գրած ու թարգմանած է ուրիշ մանր գործեր ալ, ինչպէս Սկզբունք ձայնական երաժշտութեան (1882), Փարիզի ցնցմունքները (1903), գործ Մաքսիմ Տիւքանի, Պիոս Ժ. Սրբ. Քահանայապետին Առաջին Ընդհանրական Թուղթը եւ Նափոլէոն Գ. եւ Մխիթարեանները (ֆրանսերէն):

Հ. Մ. Նուրիխան խոհական աչալրջութեամբ, նուրբ եւ խորագնին տեսութեամբ եւ վճռական ու գործունեայ կամքով օժտուած կարեւոր անձնաւորութիւն մըն էր՝ Մխիթարեան Միաբանութեան 1880–1920 տարիներու առաքելական, կրթական եւ վարչական ասպարէզներուն մէջ:

---

## Հ. ԳԱԲՐԻԷԼ ՆԱՀԱՊԵՏԵԱՆ (1857–1939)

Ծնած է Ալեքսանդրապոլի Քեաֆթարլու գիւղը՝ 26 Յունուար, 1857ին։ Ս. Ղազար կը հասնի 1869ին եւ քահանայական ձեռնադրութիւնը կը ստանայ 25 Դեկտ. 1878ին։ Դասընկերն էր Հ. Բարսեղ Սարգիսեանին եւ Հ. Աթանաս Տիրոյեանին։ Բայց իր գրական աշխատանքները նուիրուած են աւելի հայ ու բիւզանդական կապերու, քրիստոնէական նախկին դարերու կեանքին եւ գեղարուեստական արտադրութիւններու շուրջ. կեանքին վերջերը գլխաւորապէս ամփոփած է իր հետազօտութիւնները՝ հայկական ճարտարապետութեան մասին, որուն համար անթիւ նիւթ, վկայութիւն, լուսանկար հաւաքած էր արեւելքի մէջ իր առաքելութեան տարիներուն, յատկապէս այցելելով հայրենի հողին աւերակները, լուսանկարելով տաճարներ ու պալատներ։



Հ. Գ. ՆԱՀԱՊԵՏԵԱՆ

Հազիւ ձեռնադրուած, նուիրուեցաւ ուսուցչական-կրթական ասպարէզին՝ վանքի եւ Մ.-Ռափայէլեան վարժարանի մէջ։ 1888–1909ին կը գտնուի Կովկաս՝ իբր քարոզիչ եւ ժողովրդապետ՝ նախ իր հայրենիքը, յետոյ Թիֆլիս եւ Եկատերինոտար։ 1909ին կ՚ընտրուի Նախագահ Վանքի Ուսումնական Ժողովին՝ զոր կը կատարէ մինչեւ 1911. իսկ 1911–1912 կը ստանձնէ վանքի աշակերտներուն վերակացութեան պաշտօնը։ 1919–1920 կը վարէ «Բազմավէպ»ի խմբագրութիւնը եւ 1921–1923 Մ.-Ռ. վարժարանի տեսչութիւնը։ 1928–1930 կ՚ըլլայ մեծաւոր Փարիզի Մուրատեան վարժարանին, իսկ 1930–1935 ընդհ. Աթոռակալ եւ խորհրդական Վանքի վարչական Մարմնին։ 1935–1936 տարի մըն ալ կը մնայ Փարիզ, եւ անկէ ետքը վերադառնալով Վենետիկ, կը նուիրուի իր նախասիրած գրական աշխատանքներուն։ Կը վախճանի 29 Մայիս, 1939ին։

Հմուտ էր ազգային մատենագրութեան. այս գիծով նկատելի է նախ իր Ուղղագրութիւնք ազգային մատենագրաց-ը (1907)։ Գիտաւոր է յետոյ իր Միջազգային Օրացոյցը անշարժ Զատիկով,

որ 1910էն ի վեր ծանօթ հրապարակին վրայ, համաշխարհային առաջին պատերազմէն անմիջապէս ետքը կը դրուէ ուշադրութիւնը Ազգաց Ժողովին, որուն քարտուղարութեան հետ Հ. Նահապետեան ունեցած է թղթակցութիւններ: Հայ գրերու գիւտին 1500ամեակին առթիւ՝ հրատարակեց Ս. Մեսրոպ եւ Հայաստանի ոսկեդարը (1914), յետոյ Հայկական մենամարտը՝ Հայաստանի անկախութեան հռչակման ժամանակ գրուած, ուր հայրենասիրական շունչով կը ներկայացնէ հայ քաղաքական անցեալը եւ ներկան:

Իր ամէնէն կարեւոր գործն է՝ Քրիստոնէական ճարտարապետութիւնը (1930), որուն համար առատ նիւթ եւ վկայութիւններ հաւաքած էր, ինչպէս ըսինք, արեւելք գտնուած ժամանակ, 1895-1900 շրջելով Հայաստանի հնախօսական կարեւոր կեդրոնները, Անի եւ շրջակայքը: Իր կազմած ալպոմէն օգտուած է նաեւ Ստըրշիկովսքի՝ հայկական ճարտարապետութեան մասին իր ըրած ուսումնասիրութեանց համար: Հ. Գ. Նահապետեանի յիշեալ գործը լոյս տեսած է մաս մաս «Բազմավէպ»ի սիւնակներուն մէջ եւ յետոյ առանձին հատորով հրատարակուած: Հոն՝ անոր նպատակը եղած է ապացուցնել թէ կեդրոնական գմբեթաւոր ճարտարապետութեան խանձարուրքը եղած է Հայաստան:

1933ին անուանուած է անդամ Վենետիկոյ Աթենէոյի ճեմարանին՝ իր հնախօսական հմտութեան համար:

Թողած է կարգ մը անտիպ գործեր, որոնք մեծ մասով համեմատութիւններ են Նախնեաց գործերու, սրբագրութիւններ սրամիտ անդրադարձութիւններով, բնագրական ուղղումներ, հայ բիւզանդական պատմութեան համար կարեւոր նիւթեր, ինչպէս մեծն Յուստինիանոսի հայ կնոջ Թէոդորա կայսրուհիին եւ Այա Սոֆիայի շինութեան մասին:

---

## Հ. ՍՏԵՓԱՆ ՍԱՐԵԱՆ (1865-1915)



Հ. ՍՏ. ՍԱՐԵԱՆ

1915ի մեծ Աղէտին նահատակ մը քրիստոնէական հաւատքի, աստուածաբան եւ գիտնական դէմք՝ Հ. Ստեփան Սարեան ծնած է Անգարա, 7 Օգոստոս, 1865ին: Տասնեւհինգ տարեկանին կը մտնէ Ս. Ղազար: 1887, Ապրիլ 10ին քահանայ ձեռնադրուելէ ետքը՝ անցած է Հռոմ եւ յաճախ «Անձելիքում»ի մէջ իմաստասիրական եւ աստուածաբանական ճիւղին եւ վարդապետական աստիճան առած՝ դարձած է Վենետիկ 1890ին:

1891–1893 ուսուցիչ է եւ օգնական վերակացուի՝ վանքի աշակերտներուն: 1894–1895 Պոլիս է եւ յետոյ Անգարա՝ առողջական պատճառով եւ միանգամայն զբաղած առաքելական գործով: 1895 – 1900 Ս. Ղազար է, ուր յանձնուած է իրեն՝ վանքի բարձրագոյն կարգի աշակերտներուն խնամքն ու դաստիարակութիւնը: 1898–1902 իբր խմբագիր կամ իբր յօդուածագիր կը բերէ իր գրական մասնակցութիւնը «Բազմավէպ» ամսաթերթին: 1902–1906 կը ստանձնէ Մ.–Ռ. վարժարանի տեսչութիւնը եւ միաժամանակ ընդհ. Առաջնիկայ է վանքի վարչական Խորհուրդին:

1906–1910 Թուականներուն զինքը կը գտնենք իբր առաքելաջան քարոզիչ՝ Եդիսաբեթուպոլիս, յետոյ դարձեալ Անգարա. իսկ 1910էն ետքը Տրապիզոն, ուր յաջորդաբար կը վարէ տեսչական եւ հոգեւոր հօր պաշտօնները: Երբ կը հասնին Աղէտին տխուր օրերը, յետ փորձելու ամէն միջոց՝ փրկելու համար Տրապիզոնի վարժարանը եւ իր աշխատակից երկու Մխիթարեան երիտասարդ հայրերու կեանքը (Հ. Կ. Տէր Սահակեանի եւ Հ. Թ. Օտապաշեանի), կը բռնէ նահատակութեան ճամբան ըսելով. «Եթէ Աստուծոյ կամքն այսպէս է, տանք մեր արիւնը իր փառքին համար»:

Իբր աստուածաբան եւ իմաստասէր միտք՝ Թողած է քանի մը տարիներու ընթացքին գրուած՝ հետեւեալ գործերը. Ընթացք տե–

սակաւ աստուածաբանութեան (1894), 829 էջերով, ընդարձակ աշխատանք մը, ուր կը յայտնուի իր հմտութիւնը, մեծ պատրաստութիւնը եւ յստակ համադրողի մը կարողութիւնը։ Երկրորդ գործը՝ Մաքնիսական քուն, լոյս տեսած է նախ «Բազմավէպ»ի մէջ 1899–1901 եւ յետոյ առանձին ալ հրատարակուած։ Ունեցած է յաջորդ տպագրութիւն մ՚ալ 1920ին։ Հոն շօշափուած իմաստասիրական ու հոգեբանական հարցերով եւ հեղինակին լուսաւոր ու ողջամիտ դատաստաններով շատ հետաքրքրական եւ օգտակար գործ մը նկատուած էր ան՝ իր օրերուն համար։

Աւելի կարեւոր եւ իմաստասիրական–տիեզերագիտական ուղղութեամբ ուշագրաւ է անոր Էակներու ծագումը (1902), ուր կ՚ամփոփէ, կը վերլուծէ, կը հերքէ կամ կը պաշտպանէ աշխարհիս գոյացումին, մարդկային կեանքի ծագումին վերաբերեալ հարցերը։ Ըստ փիլիսոփայական եւ աստուածաբանական ողջամիտ սկզբունքներու՝ հեղինակը կը՝ պայքարի նիւթապաշտ դրութիւններու կամ շեղեալ վարդապետութիւններու դէմ, տալու համար առաջնորդութիւն եւ մտքի ուղղութիւն արդի դարու հայ երիտասարդին։ Ծանօթ են իրեն՝ այս հարցերուն շուրջ կատարուած բոլոր հրատարակութիւնները, որոնց թեր ու դէմ փաստարկութիւնները կը քննէ գիտական տուեալներու համաձայն եւ կը ջանայ հաշտեցնել զանոնք դասական աստուածաբանութեան եւ իմաստասիրութեան սկզբունքներու հետ։ Իր կարճատեւ կեանքին մէջ, Հ. Սարեան՝ դատող եւ թափանցող իմացականութեամբ տըւած է մեզի գնահատանքի արժանի գործեր, որոնք իր դրական լուսապսակը կը կազմեն։

## Հ. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԹՈՐՈՍԵԱՆ (1864–1940)



Հ. ՅՈՎՀ. ԹՈՐՈՍԵԱՆ

*Ծնած է Պարտիզակ, 28 Յունուար 1864ին. մտած է Ս. Ղազար 1874ին եւ քահանայական ձեռնադրութիւնը առած՝ 25 Դեկտեմբեր 1882ին: Մինչեւ 1885 տարին, ան աւանդած է վանքի աշակերտութեան հայ եւ լատին լեզուները, իմաստասիրութիւն, եկեղեցական պատմութիւն, հայկական մատենագրութիւն, հայրախօսութիւն եւ Ս. Գիրք: 1889–1890 եւ 1896–1898 վարած է խմբագրապետութիւնը Բազմավէպին: 1891ին, տարի մը միայն, հետեւած է Հռոմի մէջ՝ Ս. Գրքի եւ ասորերէն լեզուի, աւելի եւս զօրացնելու համար իր պատրաստութիւնը բանասիրական ասպարէզին մէջ: 1894ին կը նշանակուի ուսումնապետ Մ.–Ռ. վարժարանի եւ յետոյ 1895–1903 կը ստանձնէ վանքի աշակերտութեան դաստիարակութեան հոգը. իսկ 1903–1907 կը վարէ Քաղկեդոնի Մխիթարեան վարժարանի տեսչութիւնը: Վերադառնալով Վենետիկ՝ կը ստանձնէ այս անգամ Մ.–Ռ. վարժարանի տեսչութիւնը կարճ ժամանակի համար: 1909–1929 երկար ատեն մաս կազմած է Միաբանութեան վարչական մարմնին, նախ իբր ընդհանուր ատենադպիր, յետոյ առաջիկայ եւ ընդհանուր աթոռակալ: Կիւրեղեան աբբահօր մահէն ետքը վարած է Տեղապահի պաշտօնը՝ մինչեւ նոր Աբբայի ընտրութիւնը 1929ին:*

*1929ի ընդհ. Ժողովի նիստին մէջ, ի վարձատրութիւն իր երկարամեայ վարչական գործունէութեան եւ անխոնջ վաստակին՝ իբր առաջնորդ Ուխտին, դժուար պայմաններու տակ, պատուեցաւ Միաբանութեան կողմէ «Թագադիր աբբայի» տիտղոսով եւ Պիոս ԺԱ. Ս. Քահանայապետն ալ անուանեց զինքը Խորհրդական Արեւելեան Ս. Ժողովին:*

*Կեանքին վերջը անցուց Փարիզ՝ իբր Մեծաւոր Սամուէլ Մու–*

բառեան վարժարանին մինչեւ 1938, եւ յետոյ նոյն պաշտօնով անցաւ Վենետկոյ Մ.-Ռ. վարժարանը: Վախճանեցաւ 8 Յուլիս, 1940ին, ըղեղային կաթուածով՝ Ազոլոյի ամարանոցին մէջ, եւ թաղուեցաւ նոյն աւանին գերեզմանատունը:

Իր թողած մատենագրական գործը ունեցաւ գլխաւորապէս հայրախօսական, բանասիրական ուղղութիւն: Կրած է մեծապէս ազդեցութիւնը Հ. Ա. Սուքրիին, որուն աշակերտն էր եւ որուն հայագիտական հմտութեան հանդէպ ունեցած է միշտ խոր հիացում եւ յարգանք:

Բանասիրական աշխատանքներէն զատ՝ հրատարակած է հետեւեալ հատորները ինքնագիր եւ թարգմանածոյ. Վարք Մխիթարայ Աբբահօր (1901, 1933), դնելով Հիմնադրին դէմքը իր պատմական շրջանակին մէջ, շնորհալի ոճով ու գրական արտայայտութեամբ: Ընտիր հայկազունք (1891, 1914), ուր կը խօսի ազգային քաղաքական եւ եկեղեցական նշանաւոր դէմքերու վրայ՝ հայրենասիրական տաք շունչով, Յիշատակ Միքայէլ Փորթուգալ փաշայի, համառօտ ամփոփում մը կենսագրական գիծերու՝ արքունի գանձապետին եւ բանասէրին: Թարգմանած է Յ. Աւիլայի Խօսք առ քահանայս (1884), Գելցերի Հետազօտութիւն հայ դիցաբանութեան (1897), Փաւստոս Բիւզանդ կամ հայ եկեղեցւոյ սկզբնաւորութիւնը (1896), երկուքն ալ իրենց գերմաներէն բնագրէն, Տէ Ամիչիսի Յուշք կամ յիշատակք Լոնտրայի (1896), Վարք Ս. Պերքմանսայ, եւ Մոնսաբրէի ճառերէն հատընտիր էջեր՝ Քահանայութեան եւ Ս. Հաղորդութեան վրայ (1932): Անթառամ Տրապիզոնցի (1933), վէպ Փոլ Հանրի Պորտոյի:

Պատրաստուած միտք մըն էր Հ. Յ. Թորոսեան, հմուտ դասական լեզուներէն՝ յունարէնի եւ լատիներէնի, ինչպէս նաեւ ասորերէնի եւ եւրոպական կարեւոր լեզուներու: Իր վարչական եւ դաստիարակչական գործունէութիւնը խափանեց իրագործումը իր մատենագրական ծրագիրներուն: Բայց հակառակ իր բազմազբաղ կեանքին, տուաւ իր ուսուցչին, Հ. Ա. Սուքրիի գծով, բանասիրական խնամեալ ուսումնասիրութիւններ: Այսպէս Եզնիկ եւ իր երկասիրութիւնը (Բազմ. 1889, 14, 108, 199, 313, 385), Անանիա Շիրակացի (Անդ, 1896, 214), Համառօտ տեսութիւն Կորեան եւ իւր գրութեան վրայ (Անդ, 1897, 110, 303), Ս. Ներսէս Լամբրոնացի (Անդ, 1898, 461), Կիլիկիոյ եւ Կիպրոսի առնչութիւնք եւ Կոռնարոյ թագուհին (Անդ, 1898, 528. 1899, 5, 97), Ատովմանց

նախատակութիւնը (*Անդ*, 1899, 66), Ակնարկ մը Ս· Եփրեմի հին կտակարանի մեկնութեանց հայ թարգմանութեան վրայ (*Անդ*, 1925, 3· 1927, 33), Ս· Եփրեմի Այլակերպութեան ճառը (*Անդ*, 1927, 3), Համեմատութիւն Յ· Մանդակունւոյ «Վասն փոխոց եւ վաշխից» եւ Ս· Բարսղի «Ընդդէմ վաշխողաց» ճառերուն (*Անդ*, 1927, 65), Կորիւնի մասին բանասիրական հարցեր (*Անդ*, 1931, 465), Կորիւնի գրքին մէջ քանի մը խնդրական կէտեր (1932, 327, 412), Ս· Բարսեղ Կեսարացիի վեցօրեայ ճառերը եւ հայ թարգմանութիւնը (*Անդ*, 1934, 327, 412), Հայ ոսկեդարը եւ Աստուածաշունչի թարգմանութիւնը (*Անդ*, 1935, 293), Սեբերիանոսի Թ· ճառին յոյն բնագրին գիւտը եւ հայ թարգմանութիւնը (*Անդ*, 1937, 4), Ս· Սահակի կանոնները (*Անդ*, 1938, 86 *եւ յջրդ·*), Կորիւն եւ իր գրութիւնը (*Անդ*, 1939, 100, 145), Հ· Արսէն Սուքրի, կեանքը եւ գրական աշխատութիւնները (*Անդ*, 1932, 343, 517· 1933, 52, 148):

*Իր ուսումնասիրութիւններու շարքին մեծ մասը կը մնայ անտիպ· այսպէս Ս· Բարսղի* Ճառք վեցօրէիցի նոր թարգմանութիւն մը *յոյն բնագրէն, քննական մանրամասնութիւններով, որ շատ հմտալից աշխատութիւն մըն է: Նմանապէս Ս· Ղազարի Ճառընտիրներէն հանուած* Ս· Բարսղի երկու անտիպ ճառեր «*Հայեաց ի քեզ*» *եւ* «*Զվաշխառուաց*», *հանդերձ աշխարհաբար թարգմանութեամբ մը, գրուած գրաբարի դիմաց: Ս· Եփրեմի* Ճառ Այլակերպութեան, *համեմատութեամբ Անանիա Շիրակացիի «Յաղագս երկնից» գործին, ուսկից սա ունի փոխառութիւններ: Այլիթալա Եղեսիոյ եպիսկոպոսին* Հովուական թուղթը, *գրուած 426ին՝ Նիկիոյ Ս· Ժողովէն ետքը եւ որուն ասորական բնագիրը կորսուած է եւ գոյութիւն չունին ոչ յոյն եւ ոչ ալ լատին թարգմանութիւններ: Այս գործը միայն, զոր կատարած է թելադրութեամբ Հ· Ղ· Ալիշանի, թարգմանելով նաեւ լատիներէնի, մահէն վերջ հրատարակուած է* Աթեղահայ Եպս·ի Ռուհայի Թուղթ առ քրիստոնեայս աշխարհին Պարսից (1942) *խորագրով*:

*Իրմէ կը մնան տակաւին անտիպ՝ ընդարձակ դասագիրք մը* Հայկական հին մատենագրութեան, Վենետիկ՝ *պատմական ուսումնասիրութիւն մը*, Տանթէ Ալիկիէրի՝ *գրական ու պատմական աշխատութիւն մը*, Ս· Բենեդիկտոսի վարքին *թարգմանութիւնը եւ* կարգ մը բանախօսութիւններու *բնագիրներ, ինչպէս «Մխիթարեանց գրական գործունէութիւնը եւ Ս· Ղազարու Հայկական*

«Ճեմարանը», «Ալիշան», «Կորիւն» եւ «Ս. Եփրեմ», որոնք՝ վերոյիշեալ բոլոր բանասիրական յօդուածներու հետ կրնան ամփոփուիլ հատորի մը մէջ:

Հ. Յ. Թորոսեան լուսամիտ եւ հմուտ բանասէր մըն էր, հայրախօս, քննող միտք, եւ միանգամայն օժտուած գրական ճաշակով եւ արտայայտութեան մէջ շնորհալի, կուռ եւ տպաւորիչ արձակով:

---

## Հ. ԽՈՐԷՆ ՍԻՆԱՆԵԱՆ (1868–1928)



Հ. ԽՈՐԷՆ ՍԻՆԱՆԵԱՆ

*Ծնած է Կուտինա՝* 1868*ին. ձեռնադրուած քահանայ՝* 1892*ին: Իր մասնաճիւղն եղաւ աստեղագիտութիւնը, որուն նուիրուեցաւ կարճ ժամանակ մը միայն, որովհետեւ կեանքին մեծ մասը անցուցած է դաստիարակչական ասպարէզին մէջ՝ Վենետիկ, Տրապիզոն, Պոլիս եւ Նիկոմիդիա, դասախօսելով թուաբանական գիտութիւնները: Հետեւած էր երկու տարի Փատուայի համալսարանին մէջ բարձր թուաբանութեան եւ աստեղագիտութեան դասընթացքներուն: Բազմավէպի մէջ* 1893–1895 *եւ յետոյ* 1915–1920 *տուած է գիտական յօդուածներ: Հրատարակած է* L'hauteur de l'oxigène *գրքը, որ ուսումնասիրութիւն մըն է մթնոլորտի բարձրութեան եւ* La lumière zodiacale, *որ թարգմանուած է նաեւ իտալերէնի* 1914*ին: Ֆրանսայի Աստեղագիտական Կաճառը, որուն հետ գիտական թղթակցութիւններ մշակած է, անդամակցած էր զինքը իր անդամներու կարգին մէջ: Մտերիմ բարեկամ եղած էր Կ. Ֆլամմարիոնի: Սինանեան, թէեւ մեծ հրատարակութիւններ ըրած չէ, թերեւս իր համեստ նկարագրին պատճառաւ, սակայն կը ներ-*

կայացնէ Մխիթարեան ճեմարանին աստեղագէտ գիտունը, որ տակաւին երիտասարդ հասակին մէջ, 1894ի 5 Ապրիլի գիշերը Լուսընթագի վեցերորդ արբանեակին գիւտը ըրած էր, զոր դժբախտաբար հրապարակելու քաջութիւնը չէր ունեցած: Տարիներ վերջ, 1905ին, Փեքրին աստղաբաշխը Քալիֆոռնիոյ մէջ զայն վերստին տեսնելով՝ հրատարակութեան տուաւ եւ խլեց առաջնութիւնը: «La difesa» թերթին ըրած անդրադարձութիւնը՝ վեր հանելով Հ. Սինանեանի գիտական մարդու յատկութիւնները, 1905ին տեղի ունեցած գիւտին առիթով, անուղղակի կը փաստէ Մխիթարեան գիտնականին արժէքը (Բազմ· 1905, 189–190): Հ. Սինանեան ընտուղիւ, անցած աստղադիտարանին առջեւ, յաճախ երկար գիշերներ նուիրուած էր իր նախասիրած գիտութեան, բայց դըժբախտաբար պակսած էր իրեն ժամանակն ու պատեհութիւնը՝ անուն մը դառնալու եւրոպական շրջանակներու մէջ

Մահէն մէկ տարի առաջ վերստին սկսած էր տալ Բազմավէպի մէջ, իր հոգեկիցներուն ստիպումին վրայ, ամփոփումներ իր գիտական նուաճումներուն: Ատոնցմէ է երկար յօդուածաշարքը «Ինչո՞ւ աստղերը բացխփիկ կը խաղան» խորագրով (Բազմ· 1927, 260, 315· 1928, 21, 120, 152, 172, 226, 305, 373): Իր վաղահաս մահը, որ տեղի ունեցաւ Պոլիս, Բերայի վարժարանին մէջ, խափանեց շարունակութիւնը իր աշխատանքին (Բազմ· 1928, 63–64):

## Հ. ՎԱՐԴԱՆ ՀԱՑՈՒՆԻ (1870–1944)



Հ. ՎԱՐԴԱՆ ՀԱՑՈՒՆԻ

*Նոր ժամանակներու մեր ազգային եւ եկեղեցական հնախօսութեան ներկայացուցիչը եղաւ Հ. Վ. Հացունի, շարունակելով արդիական դրութեամբ Հ. Ղ. Ինճիճեանի գիծը։*

*Ծնած է Պարտիզակ, 10 Յուլիս 1870ին։ Տասնեւհինգ տարեկան հասակին մտած է Ս. Ղազար եւ 1892ին ձեռնադրուած քահանայ։ Իր կեանքը նուիրուած է գրեթէ ամբողջապէս կրթական եւ գրական աշխատանքներու, «Բազմավէպ»ի էջերուն վրայ տալով, շատ կանուխէն, հմտալից յօդուածներ։ 1901ին կը ղրկուի Պոլիս իբր տեսուչ Բերայի Մխիթարեան վարժարանին։ 1903ին գործակալ է Քաղկեդոնի Մխիթարեան վարժարանին։ 1909ին կը վերադառնայ Վենետիկ եւ կը պաշտօնավարէ Մ.-Ռ. վարժարանի մէջ եւ կը նշանակուի նաեւ հոգաբարձու համալսարանական Հայ Ուսանողներուն։ 1909–1914 է միաբանական անդամ վանքի ատենական ժողովին եւ ընդհանուր ատենադպիր՝ Վարչական Խորհուրդին, եւ նաեւ դաստիարակ վանքի Նորընծայարանի բաժնին (1913–1916)։*

*Առաջին միջազգային պատերազմի աւարտին՝ կը յանձնուի իրեն վերստին 1918–1920 Մ.-Ռ. վարժարանի եւ 1920–1022 Բերայի վարժարաններուն տեսչութիւնները։ Վենետիկ վերադարձին՝ կ'ըլլայ հոգաբարձու Վենետիկի ազգայիններուն, որոնց թիւը աճած էր Զմիւռնիոյ աղէտին յաջորդող արտագաղթով։ Իսկ 1927ին Միլանու նորաբաց Մխիթարեան դպրոցին մէջ կը վարէ մեծաւորի պաշտօնը։ 1929ի ընդհ. ժողովի նիստին կ'ընտրուի ընդհ. Առա-*



Ս. Ղազար. – Դափնեվարդերու ուղի

ջիկայ եւ միաժամանակ կը ստանձնէ Մ.-Ռ. վարժարանի տեսչութիւնը մինչեւ 1932: Կարճ ատենուան մը համար կ'առաքուի Պուտաբէշթ՝ Միաբանութեան գործերուն վրայ հսկելու: 1933էն մինչեւ մահը, ազատ ո՛ր եւ է պաշտօնէ, նուիրուած է իր գրական գործերուն:

Բազմաթիւ են գործերը: Իր առաջին ուղղութիւնը, սակայն, սկզբնական շրջանին, եղած է մատենագրական: Աւելի ուշ՝ մըտնելով իր բուն հունին մէջ, արտադրած է եկեղեցական, ծիսական ու հնախօսական ուղղութեամբ պատկառելի գործեր, որոնք կ'ապահովցնեն իրեն՝ հնախօս բանասէրի արժանաւոր տեղ մը հայ բանասիրութեան մէջ:

Ժամանակագրական կարգով հետեւեալներն են իր գործերը· Կենսագրութիւն եւ քերթուածք Պետրոս Ադամեանի (1896), Խորհրդածութիւնք Եղիշէի պատմութեան վրայ (1896), Հայ եկեղեցւոյ պատարագի օրերն ու տեսակները (1899), Երդմունք հին Հայոց քով (1910, 1932), Ճաշեր եւ խնճոյք հին Հայաստանի մէջ (1912), Հայ դրօշները պատմութեան մէջ (1919, 1930), Հայ ծէսն 1911ի ազգ. Սինհոդոսի գործոց մէջ (1919), Դաստիարակութիւնը հին Հայոց քով (1923), Յայտնութիւն նշխարաց եւ վըկայարանութիւն Եր. Տն. Կոմիտասայ (1923), Պատմութիւն հին հայ տարազին (1924), Կարեւոր խնդիրներ հայ եկեղեցւոյ պատմութենէն (1927), Կաթողիկոսական ընտրութիւն եւ ձեռնադրութիւն պատմութեան մէջ (1930), Ուղղագրութիւն եւ առոգանութիւն հայերէնի (1937), Մ. Խորենացի կը դառնայ ի Ե. դար (1935), Պատարագամատոյցի քննական ուսումնասիրութիւն (1936), Հայուհին պատմութեան առջեւ (1936), Cenno storico e culturale sulla nazione armena (1940), Պատմութիւն Հայոց աղօթամատոյցին (1965, հրատ. յետ մահու), Նորակերտ հայ Լուսինեանններ (1953, հրատ. յետ մահու):

Բացի վերոյիշեալ գործերէն, ունի մանր պրակներ եւ ուսումնասիրական յօդուածներ՝ գրուած «Բազմավէպ»ի և ազգային թերթերու մէջ. այսպէս Յովհաննէս Այվազեան ծովանկարիչ (1898). Երեւանեան ուղղագրութեան դէմ (1925): Տես իր յօդուածներուն ամփոփումը (Բազմ. 1942, էջ 77):

Վախճանեցաւ 8 Յուլիս, 1944ին, Վենետկոյ քաղաքային հիւանդանոցին մէջ, յետ ծանր եւ անբուժելի հիւանդութեան մը (Բազմ. 1944, էջ 46):

## Հ. ԱՐՍԷՆ ՂԱԶԻԿԵԱՆ (1870–1932)



Հ. Ա. ՂԱԶԻԿԵԱՆ

Աշխարհաբար հայերէնի ոստիկան–պահակ կամ պահապան հրեշտակ կոչուած Հայ Մամուլէն, եւ թարգմանիչ դասական և եւրոպական գլուխ–գործոցներու՝ Հ. Ա. Ղազիկեան, կը վայելէ ազգին մէջ «Նոր Բագրատունի» տիտղոսը։ Ծնած է Պարտիզակ, 8 Հոկտեմբեր 1870ին։ Տասնութամեայ հասակին՝ զգալով կոչում անդամակցելու Մ խ ի թ ա ր ե ա ն Միաբանութեան, կը հասնէր Ս. Ղազար 1888, Հոկտեմբեր 18ին։ Քահանայ ձեռնադրուած է 1895ին։ Բեղուն եղած է իր աշխատակցութիւնը «Բազմավէպ»ի եւ «Գեղունի»ի, մինչեւ իր մահը՝ թարգմանութիւններով եւ հայ լեզուի մաքրութեան ու գեղեցկութեան պաշտպան հանդիսացող իր սրամիտ եւ հաճելի յօդուածներով։

Իր ծրագիրը եղած է 50 հատոր նուիրել հայ արդի թարգմանչական գրականութեան, հայացումով դասական եւ եւրոպական մեծ դէմքերու գործերուն։ Բայց իր վիթխարի աշխատութիւնը՝ Հայկական Նոր Մատենագիտութիւն (1905–1912) խլեց իրմէ երկար տարիներ, մանաւանդ որ կորսուած ըլլալով առաջին խմբագրութիւնը՝ վերստին ձեռնարկած է անոր։ Ըստ իր յայտարարութեան գործին յառաջաբանին մէջ՝ 40 հատոր թարգմանելու ժամանակ գողցած է իրմէ այդ վերոյիշեալ հսկայ աշխատութիւնը, որ դժբախտաբար կիսատ մնացած է, հասնելով մինչեւ 3–Ն գիրերը։

Դասական գործերու թարգմանութիւններն եղան հետեւեալները. Վիրգիլիոսի Ենէականը (1910), Մշակականքը (1923), Հովուականքը (1925), Հոմերոսի Իլիականը (1911), Ոդիսականը (1924), Որատիոսի Արուեստ քերթողականը (1923), Սոփոկլէսի Իդիպոս թագաւորը (1927)։

Թարգմանած է շարք մը գործեր եւրոպական գրականու–

*թիւններէն. այսպէս՝ Իտալականէն՝ Վիկտորիա Ագանուրի* Լուութիւնը (1896) *գրաբար հայերէնով*, *Յ. Լէոբարտիի* Հառընտիր քերթուածք (1898) *գրաբար: Ասոնց յաջորդեցին աշխարհաբար թարգմանութիւնները. այսպէս Պոյիթոյի* Ներոն *ողբերգութիւնը* (1902), *Կոսիոյի* Ճիոգոնտա (1903), *Վիկտորիա Ագանուրի* Յաւիտենական զրոյցը (1905), Նոր երգեր (1910), *Տանթէի* Քաւարանը (1905) *արձակ*, Դժոխքը (1910), Արքայութիւնը (1924), *Ատա Նեկրիի* Ճակատագիրը (1909), Մրրիկները (1924), *Լէոբարտիի* Երգեր (1910), *Տասսոյի* Երուսաղէմ ազատեալը (1911), *Ֆոսկոլոյի* Տաղ գերեզմանացը (1923), *Յ. Պապինիի* Պատմութիւն Քրիստոսի (1926), *նոյնին՝* Հաց եւ գինի (1927), *Մանծոնիի* Նշանածները (1928):

*Ֆրանսական գրականութենէն տուած է Ֆրանսուա Գոբէի* Դարբիններու գործադուլը (1899) *գրաբար*, *եւ յետոյ* 1913*ին՝ նոյնը աշխարհաբարով.* Ճաշակ գաղղիական արդի բանաստեղծութեան (1899), Ռոլանի երգը (1925):

*Անգլիական գրականութենէն Թէննիսընի* Մահ Արթուրոյ (1900) *գրաբար*, *Ճօն Պլէքի* Դաստիարակութիւն անձին (1902); *Օսսիանայի* Քերթուածները (1902) *արձակ*, *Միլտոնի* Դրախտ կորուսեալը (1913), *Զ. Ռ. Գամմէլլի* Երգիծաբանութիւն Արուեստի անկման վրայ (1923), *նոյնին* Երգիծաբանութիւններ եւ ուրիշ քերթուածներ (1924):

*Գերմանականէն՝* Նիբելունգներուն երգը (1925), *Ռումանականէն՝* Հառընտիր քերթուածք *Քարմէն Սիլուայի* (1898) *գրաբար*, *Սպանական գրականութենէն՝* Իմ Սիտի երգը (1925): *Ունի* Վիպակներ *խորագրով* (1909) *նաեւ ուրիշ թարգմանութիւններ պատմուածքներու՝ ընտրուած զանազաններէ:*

*Բացի թարգմանչական գործերէն՝ ունի մենագրութիւններ եւս, հակաճառական եւ լեզուական գրուածքներ, եւ ոտանաւորներ մանուկներու համար. այսպէս* Նուէր մանկանց (1897), Մխիթար (*ոտանաւոր չափով*, 1900), Դասսոյ եւ իր թարգմանիչները (1912), Հայ լեզուի ուղղագրական դասեր (1923), Մի՛ գրէք, այլ գրեցէք (1930):

*Հ. Արսէն Ղազիկեան շուրջ երեսնեակ մը տարիներ բռնեց Հայ Մամուլը իր ձեռքին մէջ: Իր անունը յարգանք կը վայելէր իբր մեծ քերականագէտ եւ իր խօսքը վճռատու դեր ունէր գրական վիճաբանութիւններու մէջ:*

*Յիշուած գործերէն զատ՝ ունի «Գեղունի»ի մէջ ցրուած գրական թարգմանութիւններ ալ, որոնք հատորի չվերածուեցան, ինչպէս* Մարիա Ստելլայի երգերը, *եւ ուրիշ կտորներ։ Թողած է նաեւ բազմաթիւ անտիպ գործեր, լրացած կամ կիսատ։*

*Վախճանեցաւ Փատուայի հիւանդանոցին մէջ՝* 9 *Յունիս,* 1932*ին։*

---

## Հ. ԿԱՐԱՊԵՏ ՏԷՐ ՍԱՀԱԿԵԱՆ (1882–1915)



Հ. Կ. ՏԷՐ ՍԱՀԱԿԵԱՆ

*Յետ Ալիշանի՝ բանաստեղծական ուժեղ տաղանդով օժտուած դէմք մըն էր Հ. Կարապետ Տէր Սահակեան՝ ծնած Մուշ,* 25 *Օգոստ.* 1882*ին։ Հայրը՝ Մովսէս, մշեցի գիւղացի մը, որ իր զաւակը Սեդրաք, եւ անոր ընկերը՝ Կիրակոս Անդրիկեանը հետը առած՝ գաւառէն անցած է Պոլիս, անկէ վանք ղրկելու համար զանոնք։ Սեդրաք՝ իր ուխտադրութեան օրը կը փոխէ անունը Կարապետի։ Քահանայական ձեռնադրութիւնը կը ստանայ* 1902*ին եւ կը նուիրուի խանդավառօրէն ուսուցչական ասպարէզին՝ վանքի եւ միաժամանակ նաեւ Մուրատ-Ռափայէլեան Վարժարանին մէջ։* 1905*ին մաս կը կազմէ «Բազմավէպ»ի խմբագրութեան, եւ* 1906–1907 *կը ստանձնէ խմբագրապետութիւնը թերթին։* 1908–1911*ին կը յաճախէ Ֆրիպուրկի համալսարանին գրականութեան ճիւղին եւ կը գրէ Ֆրանսերէն լեզուով իր աւարտաճառը* «Chateaubriand en Orient»*։* 1912–1914 *Ս. Ղազար է, տենդագին նուիրուած իր գրական ու բանասիրական աշխատանքներուն։* 1914–1915 *Տրապի-*

զոհ է կրթական գործով. աղէտը պայթելուն՝ ինքն ալ զոհ կ'ըլլայ հայկական կոտորածներուն՝ ստանալով մարտիրոսի լուսապսակը:

Գործերը. «Բազմավէպ»ի էջերուն մէջ ցրուած են 1903–1913 տարիներուն իր Քնարերգութիւնները, Հայրենասիրական քանաստեղծութիւնները, Վիպերգութիւնները, Արտաւազդ Գ.ի Երգերը, որոնք յետոյ ամփոփուեցան հատորի մը մէջ՝ 1965ին:

Հայ կայսերք Բիւզանդիոնի՝ երկու հատորով (1905), որ արժանացած է յաջորդ տպագրութիւններու ալ 1927ին եւ 1935ին: Հոն գրական ճաշակով եւ արտայայտութեամբ կը ներկայացնէ մեզի Բիւզանդիոնի գահին վրայ բազմած հայազգի կայսրներ, ինչպէս Մօրիկ, Լեւոն Գ. Իմաստասէր, Կոստանդին Պերփեռուժէն, Ռոմանոս Լեկաբենոս, Յովհաննէս Զմշկիկ, Վասիլ Բ. Բուլղարասպան, եւն.: Հ. Կ. Տէր Սահակեան առաջինն է գուցէ Հայերուս մէջ, որ բիւզանդագիտութեամբ զբաղած է, եւ տուած յաջորդաբար ուրիշ ուսումնասիրութիւններ, ինչպէս Հայեր բիւզանդական գրականութեան մէջ խորագրով կարգ մը յօդուածներ անծանօթ մնացած հայազգի հեղինակներու վրայ, որոնք կ'արժեն ամփոփուիլ առանձին հատորի մը մէջ: Այդ կարգի դէմքերէն են, Արտաւազդ Զմիւռնիացի աստղաբաշխ, Սմբատ օրէնսդէտ, Վարդան Գէորգ, Վասիլ աշխարհագիր:

Բացի յիշեալ գործերէն՝ ունի յօդուածներ մատենագրական ու պատմական ուղղութեամբ, գրական–վերլուծական մենագրութիւններ արդի հայ գրականութեան եւ լեզուական հարցերուն վրայ եւ գրախօսականներ:

Հ. Կարապետ Տէր Սահակեանի վաղաժամ կորուստը ազգային սուգ մըն էր արդարեւ, վասնզի իրմով կ'անհետանար դէմք մը՝ որ կոչուած էր արդի դարու հայ գրականութիւնը օժտելու վաւերական գործերով, մանաւանդ երբ տարիներու փորձառութեամբ եւ զարգացումով կատարելագործուէր իր մէջ բնածին տաղանդը բանաստեղծի: